Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# 4

ԱՊՐԻԼ

1988 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԱՄԻՍԸ ՄԵԿ ԱՆԳԱՄ ՀԱՅԵՐԵՆ ԵՎ ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան-23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53—86—11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
53—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11





# ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՏԵՂԸ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՄԵՋ

## (ԸՆՏՐՈՎԻ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԻ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ԱՌԹԻՎ)

**Ք. ՄԱՆԴԱԼՅԱՆ**

ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ կազմակերպությունում ավարտվեցին կուսակցական կոմիտեների պլենումները և կոմունիստների ժողովները, որոնք քննարկեցին ընտրովի մարմինների ու դրանց քարտուղարների հաշվետվությունները վերակառուցման ղեկավարման աշխատանքի մասին։ Կոմունիստները լուրջ, առարկայական խոսակցություն ունեցան առաջին գործնական արդյունքների մասին, բարձր պահանջկոտությամբ գնահատեցին տնտեսական, սոցիալական և հոգևոր ոլորտներում կատարված տեղաշարժերը։ Հաշվետվությունների քննարկումն ընդհանուր առմամբ անցավ կազմակերպված, գործարար իրադրության մեջ, կոնստրուկտիվ քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում, բացահայտվեցին թերություններն ու բացթողումները, նշվեցին դրանց հաղթահարման, կուսկազմակերպությունների կյանքի դրական պրոցեսների զարգացման ուղիները։

Ժողովների վերլուծությունը վկայում է այն մասին, որ վերակառուցման պրոցեսը որոշ չափով ակտիվացել է քաղաքային և շրջանային կուսկազմակերպություններում, շրջադարձ է տեղի ունենում դեպի մարդկանց հետ տարվող կոնկրետ աշխատանքը, ստեղծվել է նոր մթնոլորտ, որի պայմաններում աշխատավորական կոլեկտիվներում սկսել են տոն տալ հասարակական կյանքի բոլոր ոլորտների արմատական նորացման համոզված կողմնակիցները։

Շատ ժողովներում զեկուցողներն ու քննարկման մասնակիցները տվեցին բյուրոյի, կուսկոմիտեի գործունեության հանգամանալի գնահատականը։ Ելույթ ունեցողները ոչ միայն նշեցին աշխատանքում եղած դրականը, այլև քննադատեցին վրիպումները, թերությունները։

Կոմունիստները խոր ու համակողմանիորեն քննության առան վերակառուցման ընթացքը տեղերում, քննարկեցին աշխատավորական կոլեկտիվներում գործերի վիճակի վրա կուսակցական ազդեցության ուժեղացման, տրնտեսավարման նոր պայմանների անցման, հասունացած սոցիալական պրոբլեմների ավելի արագ լուծման, կուսակցության ստորին օղակների կազմակերպչական և քաղաքական աշխատանքի ոճի, ձևերի ու մեթոդների կատարելագործման հարցերը։ Դրան մեծապես նպաստեց կատարված նախապատրաստական աշխատանքը։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմում, կուսակցության քաղկոմներում և շրջկոմներում կայացան կուսկազմակերպությունների քարտուղարների սեմինար-խորհրդակցություններ։ Կուսակցության Երևանի քաղկոմի պլենումի նախապատրաստմանը մասնակից էր դարձվել կուսակցական

---

ՄԱՆԴԱԼՅԱՆ ՔՐԻՍՏՈՓՈՐ ԼԵՎՈՆԻ— Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչ։

ակտիվի լայն շրջան: Քաղկոմի անդամները եղան քաղաքի շատ ձեռնարկություններում, կազմակերպություններում և հիմնարկներում, քննարկեցին վերակառուցման ընթացքը տեղերում, կոմունիստներին տեղյակ պահեցին քաղկոմի բյուրոյի գործունեության մասին, հաշվի առան նրանց կարծիքները կուսակցական կոմիտեի աշխատանքի մասին: «Երեկոյան Երևան» թերթի միջոցով հայտարարվել էր կուսակցության քաղկոմի հետ ուղիղ գիծ կազմակերպելու մասին, որի միջոցով կարելի էր դիմել բաժինների վարիչներին: Քաղկոմի անդամներին և կուսակտիվին նախապես ծանոթացրել էին զեկուցման թեզիսներին:

Հաշվետվությունները շահամետ, նախաձեռնողաբար ու գործարար կերպով քննարկվեցին Լենինականի և Կիրովականի, Լենինյան, Սպանդարյան, Սովետական, Արտաշատի, Կամոյի անվան, Սևանի և այլ շրջանների շատ կուսկազմակերպություններում: Կոմունիստները մեծ պահանջկոտությամբ գնահատեցին ռեալ դրական տեղաշարժերը, ուղիներ նշեցին իներցիան և լճացումը հաղթահարելու համար, սուր ու անկեղծ խոսակցություն ծավալեցին թերությունների ու բացթողումների մասին:

Այն մասին, որ ընտրովի մարմինների հաշվետվությունները կոմունիստները գնահատել են սկզբունքորեն, ձեռնարկությունների, տնտեսությունների և կազմակերպությունների գործունեության կոնկրետ արդյունքների դիրքերից, վկայում է այսպիսի մի փաստ. 226 կուսակցական կոմիտեների և կուսբյուրոների աշխատանքը ճանաչվել է անբավարար: Դրանց թվում են Դիլիջանի քաղկոմի բյուրոն, կուսակցության Հրազդանի և Շամշադինի շրջկոմների բյուրոները, «Ախթալաշին» տրեստի կուսկոմիտեն, Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանի կուսբյուրոն, Մեղրու կարի ֆաբրիկայի, Էջմիածնի շրջանի Մեծամորի կոլտնտեսության բյուրոները: Ընտրովի կուսակցական մարմինների կազմերից հանվել է 2390 մարդ, որոնք չեն կատարել իրենց պարտականությունները կամ արատավորել են իրենց, այդ թվում 500 քարտուղարներ, որոնցից մոտ կեսը՝ աշխատանքը անբավարար գնահատելու պատճառով:

Հանրապետության կուսակցական կազմակերպություններում, ժողովրդական տնտեսության մեջ գործերի վիճակը հիմք չի տալիս ինքնահանգստացման համար: Շատ ձեռնարկություններում վատ են օգտագործվում արտադրական կարողությունները, նյութական, աշխատանքային, ֆինանսական ռեսուրսները, գործի չեն դրվում աճի ինտենսիվ գործոնները: Թույլ է տրվում արտադրության ծավալների նվազում: Չեն կատարվում պայմանագրային պարտավորությունները, արտադրանքի որակի ու տեսականու, շահույթի պլանները, ինքնարժեքի իջեցման առաջադրանքները: Առանձին տագնապ է առաջացնում այն, որ այդ թերությունները հաճախ բնորոշ են նաև այն ձեռնարկություններին, որոնք արդեն աշխատում են պետընդունման, լրիվ տնտհաշվարկի, ինքնածախսածածկման ու ինքնաֆինանսավորման պայմաններում:

Շատ շրջանների տնտեսություններ հետ են մնում հողագործության և անասնապահության մի շարք մթերքների արտադրության գործում: Լուրջ թերություններ կան կապիտալ շինարարության մեջ, տրանսպորտում, առևտրական կազմակերպություններում: Կյանքի պահանջներից հետ է մնում սոցիալական համալիրի զարգացումը:

Կուսակցական, սովետական, տնտեսական մարմինները տեղերում հանդես չեն բերում անհրաժեշտ ակտիվություն ու գործարարություն, աշխատավորական կոլեկտիվներին չեն նպատակամղում արտադրության արդյունավետության բարձրացման, վերջնական բարձր արդյունքների հասնելու: Այդպիսի պայմաններում անցած պլենումներն ու ժողովները, որոնցում լսվեցին ընտրովի մարմինների հաշվետվությունները, պետք է սկզբունքորեն վերլուծեին գործունեության արդյունքները, կոնկրետ միջոցառումներ մշակեին բոլոր նեղ տեղերը վերացնելու, հետ մնացող տեղամասերը ամրապնդելու, սահմանված առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար: Մինչդեռ ոչ բոլոր հաշվետու ժողովներն անցան վերակառուցման ընթացքի վրա կուսակցական ներգործությունն ուժեղացնելու նշանաբանով: Քիչ չէին ինքնահաշվետվությունները, որոշ տեղերում կուսակցական ժողովները հիշեցնում էին սովորական արտադրական խորհրդակցություններ, չդարձան իսկական կոլեկտիվ ղեկավարման, թերությունների վերացման միջոցառումների մշակման



մարմին: Ժողովները առանց պատշաճ պատասխանատվության անցան Անիի, Գուգարքի, Եղեգնաձորի, Իջևանի, Նոյեմբերյանի և Թալինի շրջանների շատ կուսկազմակերպություններում: Ոչ բոլոր ելույթ ունեցողները կարողացան թափանցել քննարկվող պրոբլեմների խորքերը, եղան նաև այնպիսիներ, որոնք աշխատեցին շրջանցել «սուր անկյունները», լռությամբ անցնել ղեկավարների աշխատանքում եղած բացթողումների կողքով: Միշտ չէ, որ անձնական գնահատական էր տրվում բյուրոյի, կուսկոմիտեի յուրաքանչյուր անդամի գործունեությանը:

Ժողովների նախապատրաստումը մի շարք կուսկազմակերպություններում կատարվել է ոչ հրապարակայնորեն, երբեմն միայն քարտուղարի կողմից, չէին ուսումնասիրվել կոլեկտիվի անդամների կարծիքները, բացակայում էր կոմպլեքսային մոտեցումը լճացման երևույթների պատճառների բացահայտման նկատմամբ: Կուսակցության մի շարք շրջկոմներում անպատասխանատու վերաբերվեցին ժողովների նախապատրաստմանն ու անցկացմանը: Ավելին, կուսակցության առանձին շրջկոմներում (Ամասիայի, Կրասնոսելսկի և այլն) ապարատի շատ աշխատողներ խորապես չէին ուսումնասիրել ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը տվյալ հարցի վերաբերյալ, իրենց համար մինչև վերջ չէին պարզել առաջիկա հաշվետվությունների քաղաքական նշանակությունը: Սիսիանի, Սպիտակի, Թալինի և այլ շրջանների շատ կազմակերպություններում զեկուցումները չէին պարունակում հիմնական հարցերի բացահայտ ու խոր վերլուծություն. կուսակցական կազմակերպությունն ընդհանուր առմամբ գլխավորու՞մ է արդյոք վերակառուցման դինամիկ պրոցեսը, նրա ջանքերն ինչպե՞ս են ազդում կոլեկտիվի ընդհանուր տրամադրության վրա, ռեալ տեղաշարժեր կա՞ն արդյոք արտադրության կատարելագործման, կարգապահության ամրապնդման, մարդկանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման գործում:

Այսպես, հանքային ջրերի «Ջերմուկ» գործարանի, Իջևանի շրջանի № 51 շինվարչության, Աբովյանի շրջանի բնակչության կենցաղային սպասարկման վարչության, Ղափանի շրջանի Հ. Ավետիսյանի անվան սովխոզի կոմունիստների ելույթներում, բյուրոյի ու նրա անդամների աշխատանքի սկզբունքային, քննադատական վերլուծության փոխարեն գերակշռում էին ողորկ ձևակերպումներ, ընդհանուր խոսքեր. «պարտավորվում ենք բարձրացնել», «կուժեղացնենք», «կկատարենք»: Այստեղ քիչ խոսվեց մարդկային գործոնը ակտիվացնելու, սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը բարձրացնելու, հասունացած պրոբլեմների լուծման նոր մոտեցումներ որոնելու առաջնահերթ անհրաժեշտության մասին:

«Զարենցավանշին» տրեստում բացահայտվել էին հավելագրումների փաստեր, ձախողվել էր պլանային առաջադրանքների կատարումը: Նկատելիորեն թուլացել էր կուսակցական ազդեցությունը կոլեկտիվում: Բայց այդ ամենը առիթ չծառայեց ժողովում լուրջ խոսակցության համար: Ընդհակառակն, տրեստի կոմունիստները ցուցաբերեցին թուլամորթություն և լիբերալիզմ, իսկ բյուրոյի աշխատանքը, չնայած այդ ամենին, ճանաչվեց բավարար: Այս օրինակը եզակի չէ: Գուգարքի և Ղուկասյանի շրջանների անցած ժողովներում ոչ մի բացասական գնահատական չի տրվել ընտրովի կուսակցական մարմինների աշխատանքին, իսկ Անիի և Արարատի շրջաններում՝ դրանց քարտուղարների աշխատանքին, ինչը չի արտացոլում գործերի իրական վիճակը աշխատավորական կոլեկտիվների կյանքում:

Հայկական ՍՍՀ կապի մինիստրության արտագերատեսչական պահպանության № 52 ջոկատի կուսկազմակերպությունում (Սովետական շրջան), Արևիկի կոլտնտեսության (Ախուրյանի շրջան), շրջսպառկոոպի (Ամասիայի շրջան), № 2 շինվարչության (Գորիսի շրջան), ուսումնաարտադրական ձեռնարկության (Մարտունու շրջան), պահածոների գործարանի (Շամշադինի շրջան) և ուրիշ շատ կուսակցական կազմակերպություններում դժվար էր ըմբռնել, թե ինչպես է կառուցել աշխատանքը կուսբյուրոն, ինչ մեթոդներով է գործել, ինչ ստերեոտիպերից է հրաժարվել աշխատանքում և նոր ու արժեքավոր ինչ է ավելացրել նրա զինանոցում, ինչպիսին է ձեռնարկվող միջոցների արդյունավետությունը: Չխոսվեց նաև այն մասին, թե ինչպես է ընթանում դեմոկրատացման պրոցեսը, լայն հրապարակայնության իրադրություն ստեղծվե՞լ է արդյոք կոլեկտիվում:

անցել էին ցածր մակարդակով, բարեհոգության ու ինքնահանգստացման ի-
րադրության մեջ, անցկացվեցին նոր ժողովներ։

Հաշվետվությունների քննարկման ժամանակ պլենումներում և ժողովնե-
րում կոմունիստներն արել են 10 հազարից ավելի քննադատական դիտողու-
թյուն և առաջարկություն։ Դրանցից շատերը վերաբերում են կուսակցական
կյանքի դեմոկրատացմանն ու կարգապահության ամրապնդմանը և արժանի
են քննարկման XIX համամիութենական կուսկոնֆերանսում։

Արտահայտվել են հետաքրքիր մտքեր ու արվել առաջարկություններ,
որոնք ուղղված են կուսակցության ավանգարդային դերի հետագա բարձրաց-
մանը։ Մասնավորապես, առաջարկվել է ընդունել կանոնադրություն «Ընտրո-
վի կուսակցական մարմինների անդամների ստատուսի մասին», որում հըս-
տակ սահմանված լինեն նրանց պարտականությունները, լիազորությունները,
հարաբերությունները ադմինիստրացիայի հետ, պարգևավճարներ, հավելա-
վճարներ և խրախուսման այլ միջոցներ ստանալու իրավունքը։ Լավ մտածել
նրանց համար պատշաճ պայմաններ ստեղծելու հարցերի մասին, նրանց հնա-
րավորություն տալ ավելի շատ զբաղվելու կուսակցական և մարդկանց հետ
տարվող դաստիարակչական աշխատանքով։ Ավելի լայնորեն տարածել և կա-
տարելագործել սկզբնական կուսկազմակերպություններում ՍՄԿԿ անդամների
հաշվետվությունների պրակտիկան։ Սահմանել կուսակցական ղեկավարների
կանոնավոր (ամենամյա) հաշվետվություններ կոմունիստների և աշխատա-
վորական կոլեկտիվների առջև։

Վերակառուցման իրականացման աշխատանքի մասին պարբերաբար
ընտրովի կուսակցական մարմինների հաշվետվություններ անցկացնելու առա-
ջարկությամբ հանդես եկան Դիլիջան քաղաքի, Հոկտեմբերյանի, Սիսիանի,
Թումանյանի և այլ շրջանների մի շարք կուսկազմակերպությունների կոմու-
նիստներ։ Ցանկություն է հայտնվել կուսակցության քաղկոմներին և շրջկոմ-
ներին ավելի մեծ ազատություն վերապահել ապարատի կառուցվածքի, նրա
հաստիքների ձևավորման հարցերում՝ հաշվի առնելով տեղական պայման-
ները։

Առաջարկություններ են եղել լայնորեն կիրառել ներկուսակցական դիս-
կուսիաներ կուսակցական կյանքի զանազան հարցերի շուրջը, մշակել հասա-
րակական կարծիքի օպերատիվ ուսումնասիրման համակարգ։

Երևանի, Լենինականի, Կիրովականի արդյունաբերական ձեռնարկություն-
ների կուսկազմակերպություններում սուր խոսք ասվեց ընդունվող որոշում-
ները և տեղերից պահանջվող ինֆորմացիաները կրճատելու համար հե-
տևողական աշխատանք տանելու անհրաժեշտության մասին։ Ելույթներում
առաջարկվում էր պակասեցնել քաղկոմների և շրջկոմների ամենամյա պլե-
նումների քանակը, ավելի շատ ուշադրություն նվիրել սկզբնական կազմակեր-
պություններում, աշխատավորական կոլեկտիվներում տարվող անմիջական
աշխատանքին։

Շիրակի, Սևանի, Հոկտեմբերյանի շրջաններում ամենայն սրությամբ դըր-
վում էր այն հարցը, որ Կենտկոմի պատասխանատու աշխատողները, հանրա-
պետական մարմինների ղեկավարները ավելի հաճախ հանդիպումներ ունենան
աշխատավորական կոլեկտիվների հետ, լինեն տեղերում, ակտիվորեն հան-
դես գան մամուլի էջերում, հեռուստատեսությամբ և ռադիոյով։

Ժողովներում և պլենումներում սկզբունքային խոսակցություն եղավ նաև
ամենաարագ կերպով ղեկավարման քաղաքական մեթոդներին տիրապետե-
լու անհրաժեշտության մասին։ Նշվեց, որ դեռևս մեծ դժվարությամբ են հաղ-
թահարվում կուսակցական աշխատանքի պրակտիկայում եղած տեխնոկրա-
տական, հրամանատարական-հարկադրական մոտեցումները։

«Անի» գիտաարտադրական միավորման, Լենինականի Լուկաշինի ան-
վան մանածագործական ֆաբրիկայի կուսկազմակերպություններում կոմու-
նիստները գտնում են, որ եկել է ժամանակը կադրերի ռեզերվը դարձնելու
բաց, իսկ գուցե նաև ընտրովի։ Կարծիք է հայտնվել ղեկավար աշխատանքի
համար առաջադրվող թեկնածությունները նախապես աշխատավորական կո-
լեկտիվներում քննարկելու նպատակահարմարության մասին։



«Նաիրիտ» գամ-ի, «Մասիս» կոշիկի, «Լույս» ամ-ների կոնֆերանսներում ընդգծվեց, որ անհրաժեշտ է կուսակցական կոմիտեների և սովետական մարմինների, արհմիությունների, հասարակական մյուս կազմակերպությունների աշխատանքում բացառել զուգահեռականությունը։ Այդ նպատակով առաջարկվեց ուղղումներ մտցնել կուսակցական կոմիտեների ֆունկցիաների մեջ, նախատեսել կանոնադրական լրացուցիչ երաշխիքներ, ավելի համարձակ ղեկավար պաշտոնների առաջ քաշել անկուսակցականներին, շարունակել ժողովրդական դեպուտատների սովետների ընտրությունների պրոցեսի հետագա դեմոկրատացումը։ Իսկ Ջարենցավանի ավտոբեռնիչների գործարանի կոմունիստները առաջարկեցին կուսակցական կոմիտեների քարտուղարներին ընտրել կոնֆերանսների բոլոր պատգամավորների ուղղակի, գաղտնի քվեարկությամբ։

Զեկուցումներում և ելույթներում հանգամանալից խոսակցություն սկսվեց տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում աշխատանքի մասին։ Հարց բարձրացվեց, որ անհրաժեշտ է մարդկանց սովորեցնել հաջողությամբ աշխատելու այդ պայմաններում։

Հաշվետվությունների քննարկման ընթացքում որոշակի դարձավ մի առաջատար միտք. ընտրովի կուսակցական մարմինները, կոմունիստները, որոնց վստահված է դրանց կազմում լինելու բարձր պատիվը, կոչված են ցույց տալու անձնազոհության, ակտիվության, նվիրվածության օրինակ՝ վերակառուցման կուրսի իրականացման գործում։

Ընտրովի կուսակցական մարմինների, բոլոր կոմունիստների համար ժամանակի պահանջների բարձրության վրա լինելու քննություն եղան տեղի ունեցած հաշվետվությունները։ Այժմ գլխավորն այն է, որ քննարկումներից անցնենք գործնական աշխատանքի, ապահովենք խոսքի և գործի, որոշումների ու գործողությունների միասնությունը։

# ԵԹԵ ԽՈՍԵՆ ՈՂՋ ՁԱՅՆՈՎ

## ՏԱՆՅԱ ԹԱՆԴԻԼՅԱՆ

ԶՐՈՒՅՑԸ ԱԶԻԶԲԵԿՈՎԻ ՇՐՋԱՆԻ Մարտիրոս գյուղի պետական տնտեսության մեխանիզատոր, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Գրիգոր Գրիգորյանի հետ հանդիպման առաջին պահին չստացվեց։ Իմ հարցումներն ակնհայտորեն նրա սրտով չէին, ասաց միայն, որ այն ընթացքում, երբ ես պատրաստվում էի Ազիզբեկով գնալու, նրան՝ հոգով-սրտով մեխանիզատոր, հողի մարդուն, ընտրել են գյուղսովետի գործկոմի նախագահ... Կենսագրական մյուս մանրամասները, որոնք հետաքրքրում էին ինձ, Գրիգորին անտեղի էին թվում։

— Դե՛, մի՞թե մարդու մասին գրելիս պարտադիր է սկսել նրա ծնված օրից ու ամեն տարվա վրա կանգառ տալով, գալ, հասնել այսօրվան,— բողոքում էր կտրուկ, առարկություն չընդունող տոնով։— Այդպես դուք երբեք չեք ստեղծի ձեր ուզած կերպարը։

— Ես չեմ էլ ուզում որևէ բան ստեղծել։ Ինձ դուք հետաքրքրում եք այնպես, ինչպես կաք՝ որպես մարդ, որպես կոմունիստ, որպես դեպուտատ։ Ձեր խորքը, ձեր էությունն եմ ուզում ճանաչել։

— Այդ դեպքում ավելի լավ է նախ ճանաչեք իմ Մարտիրոսը։ Նա է իմ շունչը, իմ սերն ու խորքը, իմ էությունը։ Նրա համար աշխատած յուրաքանչյուր օրվա անհանգստությամբ է հյուսվել իմ կենսագրությունը։

... Հիմա, կիլոմետրերի հեռվից, փակ աչքերով տեսնում եմ այն ձյունապատ ճանապարհները, որոնք սարերի լանջերով դեպի Ազիզբեկով, դեպի Մարտիրոս էին տանում։ Ծործորներից փախած բքաշունչ քամին անխղճորեն շաղ էր տալիս ձյան կույտերը, տանում, լցնում ձորերն ու հեղեղատները։ Արևը՝ գունատ ու սառը, մերթ վախվորած թաքնըվում էր թխավուն ամպերի հետևում, մերթ կրկին հայտնվում՝ ժլատ շողարձակումով։ Հեռավոր լեռների կատարները պսպղում էին մաքրամաքուր ճերմակի ցոլանքներից։

... Թեքվում եմ դեպի գրուցակիցս, ուզում եմ հիացմունքս կիսել ու... չեմ անում. ինձ թվում է, թե բնության հովվերգական պատկերները նրա մտորումների կողքից են անցնում։ Դեմքը խիստ է, հայացքը՝ անհաղորդ...

— Ի՞նչն է ձեզ այդչափ դառնացրել,— հարցնում եմ։— Ձեր տարիքում բավականին շատ ուրախություն եք ապրել, որպեսզի այսօր ինչ-որ բանից վիրավորված զգաք։

Նա հանկարծակիի է գալիս.

— Իսկ ո՞վ ասաց, թե վիրավորված եմ։ Քավ լիցի։

— Ուրիշ էլ ի՞նչ,— ասում եմ ու բացում ծոցատետրս.— Դուք ոչինչ չեք պատմում, բայց ձեր մասին ես ինչ-որ բան, այնուամենայնիվ, լսել եմ, գրառել։ Ուզու՞մ եք կարդամ։ Ի վերջո, հետաքրքիր կլինի իմանալ, թե Ձեր մասին ինչ են ասում ուրիշները։ Դե, կարդա՞մ։ Իսկ ավելորդ բաները միասին ավելի հեշտ կշտկենք։

— Լավ, կարդացեք,— ծիծաղում է նա,— իզուր չեն ասում, թե լրագրողներից ոչ մի տեղ չես փախչի։

... Եվ ես պատմում եմ նրան իր իսկ պատմությունը.

— Այս Մարտիրոս գյուղում ես ծնվել դու՝ Գրիգոր Գրիգորյան, և քո կյանքը նրանից դուրս չես պատկերացնում։ Այս հողի վրա են ծնվել քո հայրը, մայրը, նախնիները, ապրել ու թաղվել այս հողում, դրա համար էլ այն շատ թանկ է քեզ համար. դրա համար էլ նրան անտարբեր նայել չես կարող։ Մանուկ օրերին ծունկ ու արմունկ քերծելով շատ ու շատ անգամներ ես մագլցել գյուղի մերձակա ժայռերն ի վեր, և, ամենաբարձր կատարին կանգնած, զմայլանքով նայել կապույտ երկնքով սահող ամպերի քարավաններին։ Քաղել ես գարնան առաջին ծաղիկն ու կրկին զմայլվել։ Բերանքսիվայր պառկել ես տաք հողին ու թռչերի ողջ տարողությամբ ըմբոշխնել նրա անկրկնելի բույրը։ Եվ բոլոր այդ պատկերների քնքշությունը հյուլե առ հյուլե լցվել է սրտիդ մեջ՝ կազմելով մի մեծ, անփոխարինելի սեր հայրենի եզերքի ու հարազատ օրրանի նկատմամբ։ Էլ ինչու՞ զարմանալ, որ ընդունակ ու կարգապահ վարքի տեր պատանիդ մայրաքաղաք տանող ճանապարհն ընտրելու փոխարեն դաշտերը գնացիր՝ վար ու ցանք անելու, հունձ ու հավաք անելու, պահ իսկ չզղջալով հողագործի մասնագիտություն ընտրած լինելուդ համար։ Տասնյոթ տարեկանում անուն հանած տրակտորիստ էիր, վարորդ, կոմբայնավար... Երեսունդ նոր բոլորած՝ մեքենայական բրիգադի բրիգադավար էիր։ 1984-ին քո ղեկավարած բրիգադը նախատեսված 11 հազարի փոխարեն 13 հազար 500 հեկտար պայմանական էտալոնային վար կատարեց՝ 2400 հեկտարով գերազանցելով շրջանի տրակտորային բրիգադների միջին ցուցանիշը։ Այդ տարի բրիգադի անդամները տնտեսեցին 3000 կիլոգրամ վառելանյութ, ավելի քան 500 ռուբլու պահեստամասեր։

— Ինչու՞ եք այդ թվերը հետ բերում հին հուշերի մշուշից,— ընդհատում է նա,— դրանք արդեն չորս տարվա վաղեմություն ունեն։ Մե՞ծ բան է... Մարդիկ էլ կկարծեն 84-ից այս կողմ ձեռքներս ծալած նստել ենք։ Իսկ որ լավ կուզեք իմանալ, մեր Մարտիրոսի վճռական բեկումը դեպի այսօրվա լավը հենց այդ ժամանակում է տեղի ունեցել։ Ի՞նչ եք քմծիծաղ տալիս...

— Գրիգոր Գրիգորյան, ամեն մարդ աստեղային իր ժամն է ունենում։ 1984-ը քո այդ ժամի հիմքը հանդիսացավ, դրա համար եմ այն հիշում։ Այդ տարվա նվաճումներն էլ պատճառ դարձան, որ կոմունիստ մեխանիզատորդ 1985 թվականի փետրվարի 24-ին ընտրվեր հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ։

— Այո՛,— գլխով է անում նա,— լավ եք բերում, ծայրը ծայրին հանգուցում։ Բայց գիտե՞ք՝ ամենահեշտ բանը տարիների հեռվից քո վաստակին նայելն ու գնահատականով գոհանալն է։ Իսկ ինձ դա չի ուրախացնում։ Եվ ասեմ, թե ինչու. 1974-ին, երբ դիմում տվեցի ՍՄԿԿ շարքերն ընդունվելու, սկզբնական կուսկազմակերպության ժողովում ինձ երաշխավորողներից մեկը՝ կաթնապրանքային ֆերմայի բրիգադավար Արարատ Մկրտչյանը, ամենայն լրջությամբ հարցրեց.

— Որպես կոմունիստ քեզ ինչպիսի՞ն ես պատկերացնում։

Ես ասացի՝ տված խոստմանը հավատարիմ։ Ինչ դժվարություններ էլ ծագեն քո առջև, պետք է ձգտես անպայման կատարել խոսքդ։ Միշտ այդպիսին էլ ես դեպուտատին էի պատկերացնում՝ ամուր, խոստմանը տեր, հանուն բարձր ու վսեմ նպատակի մինչև վերջ գնացող...

— Դուրս է գալիս, որ սխալվե՞լ եք ձեր կարծիքի մեջ։

— Սխալվե՞լ։ Ո՛չ։ Իմ պատկերացրած դեպուտատը այժմ էլ այդպիսին է։ Նրան մարդիկ դրա համար են ընտրում, որ գնա ուր հարկն է, խոսի իրենց հոգսու ցավից, դեղ ու ճար անի։ Ցավոք, պարտականությունների սահմանումից մինչև կատարում ընկած ճանապարհն է երկար ու դժվարին։ Սա է ինձ վշտացնում։ Դուք սա գուցե և չպատկերացնեք, մինչև... չմտնեք իմ վիճակի մեջ, չչոշափեք իմ ցավը։ Դա կապված է իմ գյուղի, այն բոլոր գյուղերի այսօրվա ու վաղվա հետ, որոնց բնակիչները վստահության քվե են տվել ինձ։

— Որո՞նք են այդ գյուղերը և ի՞նչն եք համարում ձեր գործունեության անմիջական թերին։

— Ցուցակը բավականին երկար է՝ Բարձրունի, Սերս, Մարտիրոս, Խնձորուտ, Զառիթափ և այլն։ Ընդհանուր հաշվով՝ 11 գյուղ։ Եվ ամեն մեկն իր հոգսերը, իր լուծելիք խնդիրներն ունի, որոնք հաց ու ջրի պես անհրաժեշտ են։ Ա՛յ, հարցնում եք՝ ի՞նչն է դառնացնում ինձ։ Որպեսզի կարողանամ միտքս բացատրել, մի փոքր հեռվից կսկսեմ. մեր՝ «շարքային» դեպուտատներիս պարտականությունը պետք է լինի, ըստ իս, ոչ թե պասիվ տեղ գրավել նիստերի դահլիճներում, այլ հրատապ հարցեր բարձրացնել, այրվել գործի մեջ։ Բայց... ես տպավորություն գործելու համար չօգտագործեցի «շարքային» բառը. նրան, ում դեպուտատ են ընտրել միայն հանուն անկետային տվյալների, շատ դժվար է հասնել փոքրիշատե կարևոր մի հարցի լուծման, որն անպայմանորեն վերին օղակների կամարների տակով պետք է անցնի։ Ինքս ինձ հաճախ եմ հարց տալիս՝ էլ ինչպե՞ս հասկանալ վերակառուցում և արագացում ասվածը, երբ հին օրերի պես այժմ էլ ստիպված ենք որևէ հարց լուծելու համար տասնյակ դռներ ծեծել։ Նման պարագայում հանգում ես այն վշտալի եզրակացության, թե վերակառուցումը դեռևս սպասում է վերակառուցողների, իսկ առայժմ մեր կենցաղում, վարք ու բարքում շատ բան չի փոխվել։ Կոնկրետ օրինակներ հետո կբերեմ, դրանք քիչ չեն, հիմա ուրիշ բան եմ ուզում ասել։

Ժամանակին մեր շրջանում կային այսպիսի անվանումներով բնակավայրեր՝ Արինջ, Ախաչ, Հորատիս և այլն։ Դժվար է խոստովանել, բայց եթե լեռնային գյուղերի ճակատագրի նկատմամբ անհոգությունը չլիներ, դրանք մինչև հիմա էլ հավանաբար գոյություն կունենային որպես ոչ վատ տնտեսություններ, որպես ինքնուրույն միավորներ։ Արդարացուցիչ փաստարկներ ո՞վ ասես, որ չի բերի, եթե փորձես մեկն ու մեկին մեղադրել դրանց կործանման համար։ Այո՛, այո՛, հենց կործանման. այսօր շրջանի քարտեզից նրանք իսպառ ջնջվել են, դարձել մերձակա գյուղերի հանդամասեր, խոտհարքներ կամ ամառանոցներ և... չես գտնի իրավասու մի անձ, որն

---

ԹԱՆԴԻԼՅԱՆ ՏԱՆՅԱ ԲԱՂԻՇԻ— ՍՍՀՄ ժուռնալիստների միության անդամ։

իր խղճի վրա վերցնի դրանց անհայտացման մեղքի բեռը: Գոնե հանուն նույն ճանապարհը բռնած այլ գյուղերի պահպանության: Իսկ այդպիսիների մեջ Մարտիրոսն է, Սերսը, Բարձրունին, Փոռը...

Մեզ ստիպում ենք հավատալ այն ճշմարտությանը, թե, իբր, Մարտիրոսը քայքայվում էր վատ տեղանքի պատճառով: Գյուղը ծվարած էր լեռան լանջին ու թեև նրա տեսքը խիստ գրավիչ էր ռոմանտիկ հովեկների համար, «ներսում» վտանգ էր պարունակում, հողն անկայուն էր, սահքի ենթակա: Երկար ժամանակ սավում-խոսվում էր այս մասին, բայց կանխելու, որևէ ելք գտնելու մասին դանդաղ, շատ դանդաղ էին մտածում: Ձգվում էին օրերը, ձգվում էին ամիսները, և մարդիկ չգիտեին իրենց վերջն ինչ է լինելու: Անորոշությունը ամեն բանից սարսափելի է, իսկ դրանից սարսափելին վախն է, որ մտել էր մարդկանց էության մեջ: Գիտենալ, որ վաղ թե ուշ տունդ, ուր մնում ես, կարող է սահել գրողի ծոցն ու... հանգիստ քնել, անհնար է: Իրար լրացնող այս զգացումներն էլ ծնեցին անհուսություն, անտարբերություն թե՛ հարազատ տնտեսության, թե՛ գյուղի ու նրա ապագայի հանդեպ: Եվ արտահոսք սկսվեց: Նախ անհատներ գնացին, հետո՝ ընտանիքներ, գերդաստաններ: Պակասեցին հարսանիքները, նվազեցին ծնունդները, դպրոցում փակվեցին շատ դասարաններ:

— Դրանք այն տարիներն էին, որոնք, Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովի բառերով ասած, մեր ձեռքից բաց էինք թողել:

— Այո՛: Այդ ժամանակ ես մեր սկզբնական կուսկազմակերպության քարտուղարն էի,— գլխով հաստատական նշան է անում: — Ամեն ժողովում, անկախ նրա բնույթից ու քննարկված հարցի կարևորությունից, կոմունիստներս անհանգստություն էինք արտահայտում գյուղի ապագայի վերաբերյալ, որոշումներ ընդունում ու ներկայացնում վերադաս կազմակերպություններին և... մնում սպասելով: Բազմաթիվ դռներ բախելուց հետո վերջապես հուսադրող պատասխան ստացանք, թե՝ մտածում են գյուղը տեղափոխելու մասին: Թող, որ այդպես լիներ, դա նույնպես ելք էր, բայց դրությունն այնպիսին էր, որ տեղափոխումը պետք էր կազմակերպել անհապաղ, առանց քաշքշուկի, առնվազն մեկերկու տարվա և ոչ թե անծայր-անվերջանալի ժամանակների ընթացքում: Մեր գործարությունը հաշվի մեջ չէ. նյութական ու ֆինանսական լուրջ ներդրումներ են հարկավոր: Այստեղից էլ՝ ուրիշի ձեռքերին նայելու հարկադրվածությունը:

Երկար օրեր անցան, մինչև առաջին քայլն արվեց:

... Մեր գյուղում մի հին հողագործ կա՝ Գևորգ Մուշկամբարյանը: Մեզ մոտ նա ամենատարեցն է, 90-նն է բոլորել: Ձեռքերը թուլացել են, աչքի լույսը՝ պակասել: Իսկ ժամանակին իրեն հավասար մրցակից չունեցող հնձվոր է եղել: Կոլտնտեսության արտը, ասում են, ճրագի լույսով է հնձել: Միայն թե Մարտիրոսը առաջավորներից հետ չմնար: Այս Գևորգ հողագործն ինձ կյանքում մի թթու խոսք ասած չկա, բայց նրան նայելիս շատ եմ ամաչում: Որովհետև նա մեր գյուղի խիղճըն է, մեր աշխատասեր նախնիների կենդանի ստվերը: Այդ պատճառով էլ միշտ, երբ հանդիպում ենք իրար, և նա թախծոտ աչքերով լռին նայում է ինձ, հայացքս փախցնում եմ: Այնպես է թվում, թե վաղուց անցած-գնացած մեր նախնիներն են նրա հայացքով նայում ինձ ու պատասխան պահանջում, թե ի՞նչ անենք, որ մեր սիրուն գյուղը չքանդվի, ապրի ու հարատևի...

— Ասացիք, որ սկսել եք տեղափոխվել...

— Ճիշտ է: Եվ դա թույլ է տալիս հուսալ, որ Մարտիրոսը վերջնականապես կշտկի իրեն: Արդեն իսկ հիմա մեր ձեռքբերումներն այնպիսին են, որոնց կողքով անտարբեր չես անցնի. 181 տնտեսություն ունենք գյուղում՝ 603 բնակչությամբ: Բանվորական ձեռքը 200-ն է, աշխատողների միջին տարիքը՝ 40—45: Գյուղական ծխամատյանում տարեկան 4—5 նորամանուկի ծնունդ է գրանցվում, ուսումնական այս տարում առաջին դասարանում սովորում է 22 աշակերտ:

Քսաներկու... ուրիշների վրա դա կարող է տպավորություն չգործել, իսկ Մարտիրոսի համար հսկայական ուրախություն է, որովհետև, պատահել է՝ ամբողջ դպրոցում այդքան աշակերտ չենք ունեցել:

Գյուղը լքած ընտանիքներից շատերը հետ են գալիս, հող ու միջոցներ ստանում՝ տուն կառուցելու, կրկին մարտիրոսցի դառնալու համար: Դրա շնորհիվ տնտեսությունն էլ ամրանում, ոտքի է կանգնում: Հիշենք թեկուզ այն փաստը, որ 1986 թվականի կերարտադրության տվյալներով Մարտիրոսը հաղթող ճանաչվեց ու արժանացավ կուսակցության շրջանային կոմիտեի, շրջսովետի գործկոմի և ագրոարդյունաբերական միավորման աշխատողների արհմիության շրջկոմի փոխանցիկ դրոշին: 1987 թվականին անասնապահության գծով ձեռք բերած ցուցանիշներով նշվել է շրջանի լավագույնների մեջ: Հեռավոր անցյալ են թվում այն օրերը, երբ Մարտիրոսում սովորական բան էին աշխատանքային հաղթանակները: Հիմա ամեն ինչ նորից են սկսում: Կոմունիստների 38 մարդուց բաղկացած ջոկատը մարտիրոսցի աշխատավորների մարտական կորիզն է, որից ելնում են բոլոր հաջողություններն ու լավ գործերը: Ինքնահաշվետվությունները, կատարված-չկատարվածի նկատմամբ ակտիվ քննադատական մոտեցումը, որոշումների վերահսկումը կուսկազմակերպության աշխատանքի հիմքերի հիմքն են: Կուսժողովներում ինքնահաշվետվություններով հանդես են եկել տնտեսության դիրեկտոր Վ. Մանուկյանը, մեքենայական հավաքակայանի ինժեներ-մեխանիկ Ս. Մնացականյանը, ֆերմայի աշխատողներ Է. Ներսիսյանը, Ա. Բաբայանը, դաշտավար Խ. Սահակյանը: Նրանց մեջ նաև գյուղական սովետի դեպուտատներ են, հասարակական ակտիվիստներ, և խոսքը միայն արած-չարածի մասին չի եղել, այլ միշտ ինչ-որ նոր, ուշադրության արժանի միտք են հուշել, օգտակար առաջարկություններ արել, որոնք որոշման ուժ են ստացել: Օրինակ, վերանայվել է կադրերի հարցը, առանձին կոմունիստներ և գյուղական սովետի դեպուտատներ փոխադրվել են այլ աշխատանքի, ամրացվել հետ մնացող օղակներում: Հենց այդպիսի մի քայլ էլ իրեն՝ Գրիգորյանին մեքենայական բրիգադի բրիգադավարից գյուղսովետի նախագահի պաշտոնին փոխադրելն էր: Սրտով ու հոգով արտադրության մարդ էր, թեև, ամբողջ նյարդերով հողին կապված, բայց ժողովի որոշմանը դեմ չգնաց. նոր պոստում գյուղի հոգսերն ավելի հեշտ կարող է լուծել...

...— Ինչ-որ բան այս ընթացքում, իհարկե, արվել է,— հաստատում է նա,— բայց դեռ քիչ է:

— Դրական փոփոխությունները միայն Մարտիրոսո՞ւմ են, թե՞ ձեր օկրուգը ներկայացնող մյուս գյուղերում էլ,— ընդհատում եմ:

— Անշուշտ, մյուս գյուղերում էլ: Շրջանի էկոնոմիկայում որոշակի տեղ ու դեր ունեն Գնդևազի, Բարձրունու, Զառիթափի, նաև՝ Խնձորուտի տնտեսությունները: Բոլորն էլ աշխատում են օգուտով, հաջողությամբ պայքարում գյուղատնտեսական մթերքների արտադրության պլանների կատարման, ինքնարժեքի իջեցման, որակի բարելավման համար: Դրա հաստատումն են շրջանային փոխանցիկ դրոշները, որոնց ամեն տարի արժանանում են նրանք, իսկ Գնդևազի մասին կարելի է ասել, որ նրա անունը վաղուց դուրս է եկել շրջանի սահմաններից ու հաճախ է որպես լավի հնչում բարձր ամբիոններից:

— Տնտեսական առաջընթացը պետք է որ բերի նաև սոցիալ-կենցաղային լուրջ բեկում:

— Բնական է: Կթվեմ միայն վերջին 3—4 տարվա նորույթները. Քոչպեկում շահագործման է հանձնվել դպրոցի նոր շենք, Մարտիրոսում՝ կուլտուրայի տուն, բնակելի 19 շենք, Զառիթափում կառուցման ընթացքի մեջ է դպրոցի շենքը, այս տարի կսկսվի նաև կուլտուրայի տան շինարարությունը, Բարձրունում կառուցվել են ջրհան կայանը, կենցաղի տունը, սովխոզի գրասենյակի շենքը, Գնդևազում՝ ջրամբար, Խնձորուտում և Կապույտում հորթանոց և ոչխարանոց:

— Մի խոսքով, վերակառուցման շունչն, այնուամենայնիվ, զգացվում է...

— Դե՛, իհարկե: Ես ուղղակի իրականացման տեմպերից եմ դժգոհում: Իսկ որ շունչը կա, բարերար ներգործությունը կա, ո՞վ կարող է ժխտել: Մեր առօրյայի մեջ հիմա այնպիսի հուսադրող բառեր են մտել, որից ոգևորությունդ բազմապատկվում է՝ ինքնաֆինանսավորում, ինքնածախսածածկում, ինքնուրույնություն: Եթե վերակառուցման պահանջով դրանք, իրոք, խոսեն ողջ ձայնով, մեր տնտեսությունները անպայման աննախընթաց վերելք կապրեն: Իսկ մեզ մոտ դեռ վախենում են: Ներքևներում ոչ այնքան, որքան... վերևներում: Այնտեղ, գրված ամբիոնի համեմատ, բացասական իներցիայի ուժն էլ մեծ է:

— Այդպես հեշտ է ասել ու ինքնապահովագրվել:

— Իսկ ես, կներեք, դատարկ կրակողներից չեմ: Գիտեմ ինչ եմ ասում և ինչպես: Գաղտնիք չէ՝ բնությունը մեր շրջանին երես չի տվել: Մենք կարող ենք պարծենալ, շա՜տ-շատ, անասնապահության ու կերարտադրության մեր ցուցանիշներով: Թեև ինչի էլ որ հասնում ենք, հասնում ենք դժվարությունների հաղթահարման կրկնապատկված, եռապատկված ճիգ ու ջանքերի գնով: Գիտե՞ք մենք ինչքա՜ն բանի կարիք ունենք: Լեռնային մեր գյուղերին, ուր ձմեռը 6—7 ամիս է տևում, գազիֆիկացումը հաց ու ջրի պես անհրաժեշտ է: Այսօրվա վիճակով մարդկանց հույսը քարածուխի վրա է, այն էլ տրվում է խիստ սահմանափակ չափերով, յուրաքանչյուր ընտանիքի 2,5 տոննայի հաշվով: Պատկերացնո՞ւմ եք՝ գազը որչափ կթեթևացներ մեր հոգսը, բայց այս կապակցությամբ մեր պահանջներին տրված պատասխանը ուրախացնող չէ՝ 5—6 տարի կտևի, մինչև կապույտ հրաշալիքը վերջնականապես հանգրվանի մեր լեռներում:

Ցավոտ հարց է նաև այն, որ Բարձրունի, Սերս, Խնձորուտ գյուղերը գրեթե ամբողջովին զրկված են հայկական հեռուստահաղորդումները դիտելու հնարավորությունից: Կրկին հարցադրում, կրկին պատասխան՝ ոչ մի բան չասող, ոչնչի չհուսադրող: Չշարունակեմ. եթե հիմնավոր, սրտացավ օգնություն լինի, կկանխվի գյուղերի քայքայման պրոցեսը, տնտեսություններն էլ ավելի արդյունավետ կաշխատեն: Իմ ճանաչած, հասկացած վերակառուցումն այսպիսին պետք է լինի: Գյուղը գյուղ է մնում, նրա բնակչին խելոք ճառերով ու խելացի խոսքերով չես համոզի, եթե դրա հետևում կոնկրետ գործը չլինի: Կոնկրետ գործը, հասկանո՞ւմ եք: Ա՛յ,

որոշեցի բերածս օրինակները բավարար համարել, բայց էլի չեմ կարող։ Երկու տարի առաջ մեր սկզբնական կուսկազմակերպության ժողովում որոշում ընդունեցինք և ինձ էլ, որպես հանրապետության Գերագույն սովետի դեպուտատի, պատվիրան տրվեց պետագրոարդի ուշադրությունը հրավիրել Մարտիրոս գյուղի կենտրոնական կաթսայատունը վերակառուցելու, ջեռուցումով ու տաք ջրով բնակչությանը ապահովելու հարցի լուծման վրա։

Ինչո՞վ ավարտվեցին իմ գործողությունները։ ՀՍՍՀ պետագրոարդի նախագահ ընկ. Վ. Մովսիսյանը դեպուտատիս գրավոր խնդրանքի վրա մակագրեց՝ «Ընկ. Վիկտոր Վիրաբյանին։ Խնդրվում է ընդառաջել»։ Թուղթն ուղարկվեց ուր-որ հարկ է, ու... այդտեղ էլ ավարտվեց նրա ոդիսականը։

Ընտրողների պատվիրանով մի այլ անգամ հարց եմ բարձրացրել գյուղում ջրամբար կառուցել, որով ոռոգման տակ կդրվեն 600 հեկտար նոր հողեր։ Ասեմ, որ թյուրիմացաբար Մարտիրոսը մեզ մոտ համարում են իբր շատ ջուր ունեցող տնտեսություն։ Այդպես ասելու առիթ է ծառայում ըստ երևույթին այն իրողությունը, որ գյուղի կողքին մշտահոս գետ կա։ Բայց մի բան է գետը և այլ բան նրա ջրերի կանոնավոր, արդյունավետ օգտագործումը։ Քանի դեռ դրանք նպատակաուղղված ձևով չեն օգտագործվի, մենք չենք կարող պարծենալ ոչ շատ ջուր ունենալով, ոչ էլ առատ բերքով։ Ավելացնեմ նաև, որ ջրամբարը կարևոր նշանակություն կունենա մեր հարևան Սերսի համար ևս, որի շատ հեկտարներ ոռոգման ցանցի մեջ կընդգրկվեն։

Ահա այս նկատառումներով էլ ջրամբարի կառուցման հարցը բարձրացրինք «Հայգըլխջըրշինի» առջև։ Դիմելուց հետո ներկայացուցիչներ եկան, չափ ու ձև արեցին, որոշումներ հանեցին ու... գործնական շարունակության առատ խոստումներով հետ գնացին։ Այն գնալն էր, որ գնացին։ Մինչև հիմա ոչ իրենց ենք տեսել, ոչ մի լուր առել։ Իսկ մարդիկ նայում են, և չգիտես ինչ պատասխանես, ինչպես արդարացնես նրանց պատվիրանը չկատարողի քո վիճակը։

— Տխուր փաստագրություն է,— ասում եմ, — բայց համառությունն, ի վերջո, ցանկալի արդյունք կտա...

— Մխիթարիչ բառեր են,— ձեռքը թափ է տալիս նա։— Դա դեռ ի՞նչ. առավել տագնապալիցը կա, որի մասին չգիտեմ էլ՝ արժե՞ խոսել։ Առանց այն էլ ամբողջ զրույցի մեջ բողոքի շեշտերը առատ էին...

— Մեկով ավ՛ել կամ մեկով պակաս... ձեր ցավը դրանից չի քչանում...

— Չի քչանում, ճիշտ է։ Վերևում ակնարկեցի, որ Մարտիրոսի քայքայման լուրջ պատճառը առաջին հերթին սահանքներն էին։ Քանի որ սա անժխտելի իրողություն էր, որոշում ընդունվեց գյուղը հին տեղից փոխադրելու մասին։ Մարդիկ չառարկեցին, համարեցին ճշմարիտ և իրենց նկատմամբ հոգատարությանը պատասխանեցին տնտեսության մեջ լավ աշխատելով, ղեկավարության շուրջը համախմբվելով ու ամեն մի գործի կատարման նկատմամբ պատրաստակամություն դրսևորելով։ Միայն թե գյուղը մնար, հարատևեր, միայն թե բարգավաճեր, խոսեր իր ձայնով, առաջավորներին հավասար ձայնով։

Ասում են՝ իսկական բարեկամը նեղ պահին է երևում։ Փոխադրվելու, վերածնվելու այդ ժամանակամիջոցում գյուղը մի շունչ, մի հոգի էր դարձել, մեկը մեկին օգնում էր ինչով կարող էր, ուրախանում էին մեկմեկու նորով, լավով։

Եվ հանկարծ տեղափոխման ընթացքը կանգ առավ, երբ 47 ընտանիք դեռ չէր հասցրել հին տներից դուրս գալ։ Շինարարությունը դադարեցվեց անհասկանալի պատճառով, չենթարկվելով ոչ մի տրամաբանության։ Բողոք բողոքի հետևից հղեցինք, խնդրանք-խնդրանքի և տարօրինակ պատասխան ստացանք՝ 1988 թվականին շինարարական աշխատանքներ չեն նախատեսվում, որովհետև նախագծեր չկան։ Իսկ նախագծեր չկան, որովհետև ժամանակին պատվերներ չեն ներկայացվել։ Դե՛, եթե այդպես է, տանկով էլ ձգես, բյուրոկրատիզմի սայլը տեղից չես շարժի...

Լսում էի Գրիգորյանին և դառնացած հիշում մեր զրույցը այս անգամ կուսակցության շրջանային կոմիտեի երկրորդ քարտուղար Լուսյա Սայիլյանի հետ՝ քայքայվող բնակավայրերի վերականգնման հարցի շուրջ, որոնց թվում Մարտիրոսը ևս կա։

Այնտեղ, ճիշտ է, զրուցակցիս ձայնի մեջ գոհունակության շեշտերն ավելի շատ էին. համալիր միջոցառումների շնորհիվ պրոցեսը հնարավոր է դարձել կանգնեցնել, կառուցվել են դպրոցներ, բնակելի տներ, ակումբներ, գործարկվել են արտադրական ձեռնարկությունների մասնաճյուղեր։ Հողօգտագործման արդյունավետ հիմքի փոխադրելու նպատակով կառուցվել ու կառուցվում են ջրամբարներ, կարգավորվում են ջրագծերը, նորոգվում է ներքին ցանցը։ Բացվել են բանուկ, հարմարընթաց ճանապարհներ, որոնք երբեմնի խուլ, կենտրոնից կտրված գյուղերը կապում են միմյանց ու Ազիզբեկով ավանին։ Անխափան գործում է մայրաքաղաքի հետ ավտոբուսային երթուղին։ Մի որոշում խստագույն օրենքի ուժ է ստացել՝ բացառվում են քայքայման հակված գյուղերից շրջկենտրոն և բարեկարգ այլ բնակավայրեր մարդկանց տեղափոխությունները։

Շրջանային մակարդակով, անշուշտ, քիչ բան չի արվել (ամբողջը չթվարկվեց), բայց գյուղերում դեռ շատ ու շատ հարցեր բաց են մնում։ Այսպես, օրինակ, Սերսում կենցաղի տուն չկա, բաղնիքը չի գործում, Բարձրունում չկան ակումբ ու ճաշարան, մսուր-մանկապարտեզ ու տիպային խանութ, Փոռը կենցաղային օբյեկտներ, ակումբ ու ճաշարան չունի, Արտավանում չկա մսուր-մանկապարտեզ, գրեթե ոչ մի տեղ մարզակառույցներ չկան։

— Այդ բոլոր չկա-ները մեզ քաջ հայտնի են,— ասաց Սայիլյանը,— և հարկավոր չէ կողմնակի դիտող լինել՝ տեսնելու ինչ ունենք և ինչ չունենք։ Սակայն եթե միայն գործելու եռանդին մնար, վաղուց մենք Ազիզբեկովը դրախտ դարձրած կլինեինք։ Մանավանդ որ հիմա նախկինում շրջանը լքած շատ երիտասարդներ ու առանձին ընտանիքներ սիրով հետ են գալիս, լծվում նրա առաջընթացին զարկ տալու պատվավոր գործին։ Իսկ գիտե՞ք մեզ ինչն է թևաթափ անում, այն, որ բոլոր հարցերի լուծման մեջ դեռևս շատ են չարդարացվող վերապահումները, ձևամոլությունը, թղթարարությունը, շինծու օրինապաշտությունը, իբր մենք միայն մեր շահի անունից ենք հանդես գալիս, իսկ նրանք, ում դիմում ենք, հանուր մարդկության ճակատագիրն են տնօրինում։ Մանկամիտ կարող է հնչել, բայց այնքան է պատահել, որ Ազիզբեկովից Երևան տանող երկար ճանապարհին բաղձալի երանությամբ մի բան եմ մտածել միայն՝ իսկ ի՞նչ կլինի, եթե այսինչ հարցով այսինչի մոտ մտնելուց հետո միանգամից պատասխան ստանայինք և ոչ թե նոր դռներ ցույց տային, նոր խոչընդոտներ հարուցեին, նոր բարդություններ ստեղծեին։ Կլինի՞ երբևէ այսպես, թե՞ պիտի հար ու հավիտյան շարունակենք մի չնչին հարցի պատճառով տեղեկանքների ու փաստաթղթերի դեզեր կուտակել, տասնյակ դռներ ծեծել, համոզել ու խնդրել և ձգված ջղերով վերադառնալ տուն։ Իսկ դա քո անձնական հարցը չէ, քո շրջանինն է, այն մարդկանցը, ովքեր հույսը քեզ վրա են դրել, սպասում են քո օգնությանը։ Ասում և ուրախանում ենք, որ, իրավ, շատ բան արվել է, բայց կյանքը կանգ չի առնում, ամեն մի օրը նոր խնդիրներ, նոր պահանջներ է բերում։ Նույն այդ Մարտիրոսում մի ժամանակ հարցերի հարց էր քայքայման պրոցեսը կանխելը, իսկ այժմ մտածում ենք կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման մասին։ Գիտենք՝ կենտրոնացված ջեռուցում է հարկավոր, կոյուղին անկանոն է գործում, կենցաղի տուն չկա և դեռ էլի որքա՛ն չկա-ներ հաշվի մեջ են մեզ մոտ, «հերթագրված», լուծման են սպասում...

... Բաժանվելուց առաջ Գրիգոր Գրիգորյանին վերջին հարցը տվեցի.

— Ինքդ որպես կոմունիստ, դեպուտատ ու որպես մարդ, ինչպե՞ս ես գնահատում քո ապրած կյանքը։

— Ինձ համար դա նշանակություն ունի այն չափով, որչափով ծառայում է իմ հայրենի գյուղին ու նրա բարօրությանը։ Եթե ի վիճակի եմ գյուղի ու հայրենիքի համար անել մի լավ բան ու անում եմ, դրանով ինձ լիովին վարձատրված եմ զգում...

Լենինի արտահայտությամբ՝ գլխավոր արտադրողական ուժը: Դրա հետ մեկտեղ, մարդը արտադրական հարաբերությունների կրողն է: Եվ եթե այսօր դրվում է էկոնոմիկայի, հասարակական կյանքի բոլոր ասպարեզների վերակառուցման, դեմոկրատիայի հետագա զարգացման խնդիրը, ապա այն առաջին հերթին սկսվում է մարդու գործունեության վերակառուցումից:

Հանրային արտադրության ինտենսիվացումը, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումում, համապատասխան տնտեսական մեխանիզմի ստեղծումը մեզ մղում են նոր հայացքով նայել նաև մեր հասարակության մեջ զբաղվածության պրոբլեմին: Արտադրության գերազանցապես էքստենսիվ զարգացման պայմաններում, արագ էր աճում աշխատատեղերի թիվը: Այն ժամանակ գլխավոր պրոբլեմը նոր աշխատողներ գտնելն էր: Այժմ իրավիճակը արմատապես փոխվում է: Գիտատեխնիկական առաջադիմության արագացման պայմաններում զգալիորեն աճելու են աշխատողների ազատման մասշտաբները: Դրան է մղում նաև նոր տնտեսական մեխանիզմը: Միևնույն ժամանակ աճում է աշխատանքային ռեսուրսների պահանջմունքը սպասարկման, մշակույթի, կրթության, առողջապահության, հանգստի ոլորտների համար:

Ուստի, եթե մինչև այժմ ուշադրության կենտրոնում էր բնակչության լրիվ զբաղվածության ապահովումը, ապա այժմ դրա հետ մեկտեղ առաջին պլան են մղվում ռացիոնալ զբաղվածությունը, աշխատուժի օգտագործման արդյունավետության բարձրացումը: Վերջինիս համար կարևորագույն նախապայման է անցումը լրիվ տնտհաշվարկի, ինքնածախսահատուցման և ինքնաֆինանսավորման: Դա, գիտատեխնիկական առաջընթացի հետ մեկտեղ, կհանգեցնի նյութական արտադրության բոլոր ճյուղերի ավանդական արտադրություններում աշխատուժի որոշ մասի կրճատմանը: Տվյալ դեպքում ստեղծվում է անհրաժեշտ շահագրգռվածություն արտադրական ամեն մի օղակում աշխատուժի թաքնված ռեզերվների բացահայտման և օգտագործման համար: Դրանով իսկ աշխատուժի դեֆիցիտ ունեցող շատ տնտեսական շրջաններ կարող են իրենց կարիքը բավարարել թաքնված ռեզերվների օգտագործման հաշվին:

Ինչ վերաբերում է աշխատանքային ռեսուրսների ակտիվ հաշվեկշիռ ունեցող մի շարք հանրապետությունների, ապա էկոնոմիկայի ինտենսիվ զարգացումը դրանցում կուղեկցվի նոր աշխատատեղերի ստեղծմամբ: Մեր հանրապետությունում, օրինակ, նյութական արտադրության մի շարք ճյուղերում, մասնավորապես վերամշակող արդյունաբերության մեջ, ինտենսիվ զարգացման հետ միասին շեշտը դրվում է լրացուցիչ աշխատանքային ռեսուրսներ ընդգրկելու վրա:

Լրիվ զբաղվածության հարցի լուծման տեսակետից երկրի տարբեր տնտեսական շրջաններում դրվում են յուրահատուկ խնդիրներ: Այդ առումով ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլաններում զուգակցվում են տնտեսական շրջանների տեղական առանձնահատկություններն ու երկրի տնտեսական զարգացման ընդհանուր օրինաչափությունները: Խոսքը տվյալ դեպքում այն մասին է, որ համապետական և ռեգիոնալ պլանավորման խնդիրների զուգակցումը, տնտեսական շրջանների էկոնոմիկայի զարգացման ուղղությունների ընտրությունը և տեմպերի կանխորոշումը հիմնվում են ոչ միայն դրանց բնական պայմանների, բնական ռեսուրսների, այլև աշխատանքային ռեսուրսների առկայության և օգտագործման հնարավորությունների փոխկապակցման վրա: Օրինակ, երկրի մի շարք շրջաններում բնակչության բնական աճի հաշվին աշխատանքային ռեսուրսները գրեթե չեն ավելանում, իսկ անդրկովկասյան և միջինասիական հանրապետություններում, աշխատանքային տարիք մուտք գործող բնակչության բավականին մեծ թվի հետ մեկտեղ, բարձր տոկոս են կազմում նաև անձնական օժանդակ և տնային տնտեսություններում զբաղված աշխատանքային ռեսուրսները, որոնք մնում են որպես հասարակական տնտեսությունը համալրող ռեզերվներ:

Երկրի ամեն մի տնտեսական շրջանի ապագա աշխատանքային ռեսուրսները կազմավորվում են նախորդ տարիների և կոնկրետ տվյալ ժամանակաշրջանի ժողովրդագրական ցուցանիշների հիման վրա: Նախընթաց տարիներին և ներկայումս Հայկական ՍՍՀ-ն բնութագրվում է բնակչության աճի ավելի բարձր ցուցանիշներով, քան ընդհանուր առմամբ Միությունը: Այսպես, ՍՍՀՄ-ում բնակչությունը 1970—1986 թթ. ավելացել է մոտ 16,5, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 36,8 տոկոսով: Կարելի է ենթադրել, որ մոտ ապագայում նույնպես մեր հանրապետության աշխատանքային



ռեսուրսների աճի տեմպերով կգերազանցի միութենական համապատասխան ցուցանիշը: Սակայն դա բնավ չի նշանակում, որ մենք այսուհետև էլ կունենանք ռեսուրսների այնպիսի ակտիվ հաշվեկշիռ, ինչպես նախորդ երկու հնգամյակներում, քանի որ ընթացիկ տասնամյակում (1986—1995 թթ.) աշխատանքային տարիք մուտք կգործեն տարեկան 15—20 հազարով ավելի քիչ պատանիներ ու աղջիկներ, քան նախորդ տասնամյակում (1976—1985 թթ.):

Աշխատանքային տարիք մուտք գործողների թվի նվազման հետ մեկտեղ կենսաթոշակի անցնող բնակչության հաշվին ավելի շատ աշխատողներ կազատվեն: Հետևապես, այդ երկու գործոնների փոխգործողության հետևանքով նոր աշխատատեղեր ստեղծելու խնդիրն այնքան սուր բնույթ չի կրի, ինչպես նախկինում: Նման իրավիճակը, սակայն, հիմք չի տալիս եզրակացնելու, որ մեզ մոտ նոր աշխատատեղեր ստեղծելու մինչև այժմ իրականացվող քաղաքականությունը կորցնում է իր հրատապությունը:

Մոտ ապագայում հանրապետությունում լրացուցիչ աշխատատեղեր ստեղծելու անհրաժեշտությունը թելադրվում է ոչ միայն աշխատանքային տարիք մուտք գործող երիտասարդության թվաքանակով, այլև արտադրության ավանդական ճյուղերից ցածր որակավորում ունեցողների և չմեքենայացված աշխատանքներում զբաղվածների արտամղումով, տնային տնտեսությունից դուրս եկող բնակչությանը հանրային ընդգրկելով, աշխատունակ բնակչության կազմում առավել ակտիվ տարիքի (25—44) տեսակարար կշռի բարձրացմամբ, օգտակար և մշակելի հողատարածությունների ընդարձակման սահմանափակությամբ, բնակչության բարձր և աընդհատ աճող խտությամբ, ջրային, էներգետիկ, հանքահումքային ռեսուրսների ոչ մեծ պոտենցիալով:

Աշխատանքային տարիք մուտք գործող բնակչությունը կսկսի մեծ չափերով ավելանալ 1990-ական թվականների կեսերից: Այդ իմաստով, ինչպես անցյալում, այնպես էլ ընթացիկ տասնամյակում (1986—1995 թթ.) դրսևորվող որոշ գործոններ օբյեկտիվորեն պայմանավորում են բարձր որակավորում պահանջող մի շարք ճյուղերի հետագա ընդլայնումը: Մինչև 2000 թվականը հանրապետությունում լրիվ զբաղվածությունն ապահովելու համար հարկ կլինի ստեղծել լրացուցիչ նոր աշխատատեղեր, որոնց 88—90 տոկոսը բաժին կընկնի աշխատանքային տարիք մուտք գործող բնակչությանը, իսկ մնացածը՝ տնային տնտեսությունից եկող համալրմանը: Ուստի սոցիալ-տնտեսական զարգացման հեռանկարային ուղղությունները սահմանելիս կարևոր է հաշվի առնել կանանց և կենսաթոշակառուների աշխատուժի օգտագործման առանձնահատկությունները, երիտասարդության աշխատանքային, արտադրական հակումները:

Կանանց համար սահող գրաֆիկով կրճատ աշխատանքային շաբաթով և կրճատ աշխատանքային օրով աշխատանքի կազմակերպումը, կիրառվող ժողովրդագրական քաղաքականության ակտիվության բարձրացման հետ մեկտեղ, հնարավորություն կտա որոշակի համապատասխանություն ստեղծել նրանց աշխատանքային և մայրական պարտականությունների միջև: Այդ գործում չափազանց մեծ է ծառայությունների ոլորտի հետագա կատարելագործման դերը և ընդգրկվածությունը հենց այս ոլորտում:

Ծառայությունների ոլորտում կանանց զբաղվածության մակարդակի բարձրացումը, նրանց և կենսաթոշակառուների համար կրճատ աշխատօրվա անցնելու համար լայն պայմանների ստեղծումը կհանգեցնեն ազատվող աշխատատեղերի ավելացմանը: Հարց է առաջանում. արդյոք, դրանով իսկ չե՞ն մեծանա արտադրական կարողությունների թերօգտագործման հնարավորությունները աշխատանքային ռեսուրսների կարիք ունեցող հանրապետություններում: Բանն այն է, որ այդ տեղերը կզբաղեցնեն նյութական արտադրության ճյուղերում տեխնիկական առաջադիմության հետևանքով ազատվող աշխատողները: Ինչ վերաբերում է աշխատանքային ռեսուրսներով ապահովված տնտեսական շրջաններին, ապա, դրա հետ մեկտեղ, կարևոր նշանակություն կունենա արդյունաբերության մեջ հերթափոխային գործակցի բարձրացումը, որը շատ ցածր է: ՀՍՍՀ-ում, օրինակ, այդ գործակիցը 1,31 է, որը համարվում է արտադրական կարողությունների, ուստի և աշխատուժի էքստենսիվ օգտագործման ցուցանիշ: Հասկանալի է, որ հետագայում, դրա հետ մեկտեղ, կարևոր նշանակություն կստանա արդյունաբերության մի շարք ճյուղերի կառուցվածքային ստորաբաժանումների տարբեր օղակների տեխնիկական հագեցվածության և արտադրության պրոցեսների մեքենայացման մակարդակներում տեղ գտած անհա-

ստեղծագործ աշխատանքը: Գիտատեխնիկական հեղափոխությունը հենց մարդու ձեռքերի և խելքի արգասիքն է: Դա առաջին հերթին հեղաշրջում է արտադրու-
թյան բոլոր մասնակիցների գիտակցության և տրամադրության մեջ: Եվ միանգամայն օրինաչափ է, որ կուսակցությունն այսօր բոլոր փոփոխությունների վճռական պայ-
մանը համարում է մարդկային գործոնը: ՍՄԿԿ համագումարի և պլենումների փաս-
տաթղթերում կարմիր թելի պես անցնում է այն միտքը, որ սոցիալիստական տըն-
տեսական մեխանիզմի վերակառուցումը վերաբերվում է բոլորին, ոչ ոք չպետք է և չի կարող մի կողմ մնալ, և միայն յուրաքանչյուրի համառ, նոր բովանդակությամբ հա-
գեցված աշխատանքը կապահովի գործի հաջողությունը: Եվ, իրոք, տնտեսական կառավարման արմատական ռեֆորմը բոլոր աշխատողներից պահանջում է գործո-
ղությունների վերաիմաստավորում, աշխատանքի ոճի և մեթոդների վերափոխում: Ձեռնարկությունների ինքնուրույնության և տնտհաշվարկի խորացման կուրսը, անցումը ինքնաֆինանսավորման և ինքնածախսածածկման, այնպիսի տնտեսական պայման-
ների ստեղծումը, որոնք անդառնալի կդարձնեն արտադրության ինտենսիվացումը, ինչպես երբեք, բարձրացնում է նախաձեռնության և սոցիալիստական ձեռներեցու-
թյան դերը ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր օղակում, ամեն մի աշխա-
տավորական կոլեկտիվում:

Այսօր նոր ուժով է հաստատվում մարդկային գործոնի դերը սոցիալ-տնտեսա-
կան արագացման գործում: ՍՄԿԿ XXVII համագումարում նշվեց, որ տնտեսական մեխանիզմի վերակառուցումն սկսվում է գիտակցության վերակառուցումից, մտածո-
ղության և գործողության արմատացած ստերեոտիպերից հրաժարվելուց, նոր խըն-
դիրների հստակ պատկերացումից: Դա հատկապես վերաբերում է գիտատեխնիկա-
կան առաջադիմության հասունացած պրոբլեմների լուծմանը:

Նոր գաղափարների իրագործման, նոր սերունդների տեխնիկայի և տեխնոլո-
գիայի կանխատեսման, այդ պրոցեսի պլանային կառավարման հիմնական իմաստը գիտատեխնիկական նորույթների արագ և արդյունավետ իրացումն է, արտադրու-
թյան տնտեսագիտական ցուցանիշների նշանակալից աճը: Այսպիսի հարցադրումն առավել լրիվ է համապատասխանում երկրի սոցիալ-տնտեսական առաջընթացի արագացմանը, ժողովրդական տնտեսության կառավարման մեխանիզմի արմատա-
կան վերակառուցմանը:

---



# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

**Ս. ԱՎԱԳՅԱՆ, Հ. ՈՍԿԱՆՅԱՆ**

ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆԻ ստեղծագործական ավանդը ժամանակակից գիտության տարբեր բնագավառներում անսպառ է. կարելի է խոսել դրա զարգացման հատուկ՝ լենինյան փուլի մասին: Լենինի՝ որպես հեղափոխական մտածողի, պատմական դերն այն է, որ նա Մարքսի և Էնգելսի տեսությունը հարըս-
տացրեց նոր նվաճումներով բնական և հասարակական գիտությունների բնագա-
վառում, ընդհանրացրեց հեղափոխական շարժման տեսությունն ու պրակտիկան, գիտականորեն ապացուցեց սոցիալիզմի հաղթանակի անխուսափելիությունը ինչ-
պես մեր, այնպես էլ ուրիշ երկրներում:

Ինչպես նշեց Մ. Ս. Գորբաչովը Մեծ հոկտեմբերի 70-ամյակին նվիրված հան-
դիսավոր նիստում, լենինյան ժառանգությունը օգնում է մեզ ճիշտ կողմնորոշվել կյանքում, «վերակառուցումը դիտել որպես մեր հասարակության առաջադիմության որոշակի պատմական փուլ... սոցիալիզմին հաղորդել նոր որակ, ինչպես ասում են, երկրորդ շնչառություն, իսկ դրա համար իրականացնել հասարակության կյանքի բոլոր՝ ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր կողմերի խոր նորացում, առավել լրիվ չափով բացահայտել մեր կարգերի հումանիստական բնույթը»:

Լենինի գիտական ժառանգությունը միշտ իր վրա է սևեռել բոլոր երկրների գիտնականների, աշխատավորական լայն զանգվածների ուշադրությունը, նրա աշ-
խատությունների նկատմամբ հետաքրքրությունն առանձնապես աճել է մեր օրերում: Վ. Ի. Լենինը բազմիցս դիմել է դաստիարակության, լուսավորության և ժողովրդական կրթության պրոբլեմներին: Նրա աշխատություններում նշանակալի տեղ են գրավում աշխատավորների և աճող սերնդի գիտական աշխարհայացքի հիմունքների ձևավորման հարցերը:

Լենինյան ուսմունքը աշխարհայացքի, դրա բովանդակության և կառուցվածքի մասին կոմունիստական դաստիարակության պրոբլեմների իսկական գիտական ու սումնասիրման օրինակ է: Լենինի աշխարհայացքային կոնցեպցիայի դերը առանձ-
նապես մեծ է մարքս-լենինյան փիլիսոփայության, գիտական կոմունիզմի, դպրոցա-
կան մանկավարժության տեսական դասընթացների դասավանդման և ուսումնա-
սիրման համար: Այդ դասընթացների շատ թեմաների մշակման ժամանակ նրա գա-
ղափարներն աշխարհայացքի մասին ունեն հիմնարար նշանակություն: Նրանք օգ-
նում են ճիշտ իմաստավորել գաղափարախոսական ներգործության միջոցների հնա-
րավորություններն այն հաշվով, որ առավելագույն արդյունավետությամբ դրանք օգտագործվեն դաստիարակչական աշխատանքում: Իրենց արդիականությունը պահ-
պանում են նաև լենինյան գաղափարները գիտական աշխարհայացքի ձևա-
վորման պրոցեսի ղեկավարման մասին, որոնցում բացահայտվում են աշխատավոր-

---

ԱՎԱԳՅԱՆ ՍԱՄՍՈՆ ԱՎԱԳԻ— Կիրովականի մանկավարժական ինստիտուտի ՍՄԿԿ պատ-
մության և գիտական կոմունիզմի ամբիոնի ավագ դասախոս, մանկավարժական գիտություն-
ների թեկնածու:

ՈՍԿԱՆՅԱՆ ՀՐԱՉԻԿ ԱՐՄԵՆԱԿԻ— նույն ամբիոնի ավագ դասախոս:

երիտասարդության կոմունիստական դաստիարակության ուժեղացումը, վերակառուց-
ման ոգով նրա գիտակցության ձևավորումը: Անանց խնդիր է երիտասարդության
մեջ դիալեկտիկական մտածողություն մշակելը, ուսանողների և սովորողների մեջ
«ամբողջական հեղափոխական աշխարհայեցություն» (Վ. Ի. Լենին) ձևավորելը,
հենվելով հասարակության կյանքի բոլոր ոլորտների նորացման ուղղությամբ կու-
սակցության տեսական և պրակտիկ գործունեության միասնության վրա... Կուսակ-
ցության ամբողջ գաղափարախոսական աշխատանքը պետք է ակտիվորեն նպաստի
միջնակարգ և բարձրագույն դպրոցի հաջող վերակառուցմանը, անընդհատ կրթու-
թյան համակարգի՝ որպես սովետական մարդու անհատականության կազմավորման
ամբողջական պրոցեսի կարևորագույն օղակի ծավալմանը»:

Աշխատավորների մեջ գիտական աշխարհայացքի դաստիարակության հարցը
հատուկ կարևորություն է ձեռք բերում մեր օրերում, երբ սովետական ժողովուրդը
մեծ ոգևորությամբ ձեռնամուխ է եղել երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն ա-
րագացնելու, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը վերակառուցելու, մեր հա-
սարակության քաղաքական սիստեմը լայնորեն դեմոկրատացնելու ստրատեգիական
կուրսի իրականացմանը:

«Մեր ժամանակում, բեկումնային ժամանակում,— ասաց Մ. Ս. Գորբաչովը
հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների խորհրդակցությունում,—
ամբողջ հասակով մեկ ծառանում է հասարակական գիտությունների դասավանդման
նշանակության հարցը գիտական աշխարհայացքի ձևավորման գործում: Այստեղ
նոր պրոբլեմներ, խնդիրներ կա՞ն արդյոք: Կարծում եմ, որ կան:

Մարդկության գիտական և տեխնիկական հզորության աճը, գլոբալ պրոբլեմ-
ների սրումը, ուժեղացող սպառնալիքը մարդկային քաղաքակրթության գոյությանը
և երկրի վրայի բուն կյանքին՝ որպես միլիտարիզմի ու ագրեսիայի իմպերիալիստա-
կան քաղաքականության հետևանք, առաջադրում են աշխարհայացքային նոր պրոբ-
լեմներ և պարտավորեցնում են վերանայել հները»:

---

# ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԻՆ ՀԱՎԱՏԱՐԻՄ

**Վ. ԱՍՏՎԱԾԱՏՈՒՐՈՎ**

ՄԵՐ ԵՐԿԻՐԸ ԹԵՎԱԿՈԽԵԼ է վերակառուցման նոր, ամենադժվար փուլը՝
վերակառուցման քաղաքականությունն իրագործելու փուլը, որի նպա-
տակը սովետական մարդկանց կյանքի նյութական ու հոգևոր մակարդակի զգալի
բարձրացումն է: Մարդն իր շահերով միշտ էլ եղել և մնում է կուսակցության քաղա-
քականության կենտրոնում:

Ժողովրդի բարեկեցության բարձրացմանն ուղղված միջոցառումների համա-
կարգում առաջնակարգ նշանակություն ունի բնակչությանը պարենով մատակարա-
րելու գործի բարելավումը: Պարենային ծրագրի մշակումը, որը երկրի ագրոարդյու-
նաբերական ողջ համալիրի զարգացման որակական նոր փուլ է, հնարավոր դար-
ձավ միայն ժամանակակից պայմաններում, երբ տնտեսական հզոր պոտենցիալի
շնորհիվ կարելի է անհրաժեշտ կապիտալ ներդրումներ կատարել, մոբիլիզացնել
նյութական և աշխատանքային ռեսուրսները, օգտագործել գիտատեխնիկական ա-
ռաջադիմությունը, տնտեսավարման մեխանիզմը նպատակամղել հստակ սահման-
ված և գիտականորեն հիմնավորված նպատակի ձեռքբերմանը: Ծրագիրն արտացո-
լում է արդի պայմաններում կուսակցության տնտեսական ստրատեգիայի գլխավոր
առանձնահատկությունը՝ էկոնոմիկայի փոխադրումը զարգացման ինտենսիվ ուղու
վրա: Միայն համակողմանի ինտենսիվացման միջոցով է հնարավոր բարձրացնել
գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնապահության մթերա-
տվությունը, արդյունավետորեն պայքարել կորուստների դեմ, բարելավել գյուղատըն-
տեսական հումքի արդյունաբերական վերամշակումը և ավելացնել բարձրորակ
պատրաստի արտադրանքի թողարկումը:

Պարենային ծրագիրը ոչ միայն առաջնահերթ տնտեսական, այլև հրատապ սո-
ցիալ-քաղաքական խնդիր է: Այն խարսխվում է սոցիալիստական հասարակարգի
կառուցման լենինյան հիմնարար սկզբունքների վրա:

Վ. Ի. Լենինը պարենային հարցը նոր իշխանության կենսականորեն կարևոր
խնդիրն էր համարում: Սովետական պետության առաջին իսկ տարիներին նա նշում
էր, որ անհրաժեշտ է երկրում պարենային ֆոնդ ստեղծել՝ գյուղատնտեսության վե-
րականգնման և վերակառուցման հիման վրա:

Սովետների VIII համամիութենական համագումարում Վ. Ի. Լենինն ասաց. «Ոչ
մի սոցիալիստական երկիր հնարավոր չէ, իբրև բանվորագյուղացիական իշխանու-
թյան պետություն, եթե նա բանվորների և գյուղացիների համատեղ ջանքերով չի
կարող հավաքել պարենավորման այնպիսի ֆոնդ, որը կարողանա ապահովել ար-
դյունաբերության մեջ զբաղված բանվորների ապրուստը, որ հնարավոր լինի տաս-
նյակ և հարյուր հազարավոր բանվորների ուղարկել այնտեղ, որտեղ պետք է սովե-
տական իշխանությանը: Առանց դրան՝ միայն խոսակցություններ կլինեն... Տնտե-
սության իսկական հիմքը պարենավորման ֆոնդն է: ... Առանց այդպիսի ֆոնդի սո-
ցիալիստական քաղաքականությունը միայն ցանկություն կմնա»: (ԵԼԺ, հ. 42, էջ
185—186):

Լենինյան պարենային քաղաքականության կենսագործման շնորհիվ սովետական
իշխանությանը հաջողվեց պարենով ապահովել կարմիր բանակը և փրկել սովյալ
բնակչությանը: Այն ժամանակ կուսակցությունը հարկադրված եղավ իրականացնել
պարենմասնատրում, որովհետև հնարավոր չէր լայն ապրանքաշրջանառությամբ

---

ԱՍՏՎԱԾԱՏՈՒՐՈՎ ՎԼԱՍԻԿ ՍԵԴՐԱԿԻ— տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր:

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978) պլենումն անհրաժեշտ համարեց պլանների
բազմակիության վերացումը, ինչպես նաև գյուղատնտեսական մթերքների արտա-
դրության ու մթերումների գործում բարձր ցուցանիշների հասնելու համար տնտեսու-
թյունների խթանման համակարգի բարելավումը:
ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1980 թվականի նոյեմբերի
14-ի «Գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների պլանավորման
ու տնտեսական խթանման բարելավման մասին» որոշմանը համապատասխան, սահ-
մանվեցին գյուղատնտեսական մթերքների գնման միասնական պետական հնգամյա
պլաններ:

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումը մշակեց գյուղատնտեսական
մթերքների արտադրության ու մթերումների ավելացման գործում նյութական շահա-
գրգռության բարձրացմանն ուղղված խոշոր միջոցառումներ: Գյուղատնտեսու-
թյան զարգացման հետագա խթանման նպատակով բարձրացվեցին բուսաբուծության
և անասնապահության մթերքների գնման գները, ինչպես նաև սահմանվեցին վա-
տագույն պայմաններում, վնասաբեր և ցածր շահութաբեր տնտեսություններում ար-
տադրվող արտադրանքի գնման գների հավելումներ: Ձեռնարկված միջոցների շնոր-
հիվ նկատելիորեն ավելացավ կոլեկտիվ և պետական տնտեսությունների շահույթը:
Չնայած դրան, անասնապահության մի շարք մթերքների արտադրությունը մնում է
վնասաբեր: Գնման գների բարձրացման պայմաններում դա ցույց է տալիս, որ գնի
ներգործունությունը, շահութաբերության վրա ներազդող մյուս գործոնների համեմա-
տությամբ, դեռևս բավարար չափով արդյունավետ չէ: Այսպիսի պայմաններում հան-
րապետության կոլեկտիվ և պետական տնտեսություններում արտադրանքի ինքնար-
ժեքի իջեցման կամ կայունացման հարցերն առաջնահերթ նշանակություն են ստա-
նում: Եվ իրոք, միջին գնման գների նկատմամբ արտադրանքի ինքնարժեքի աճի
ավելի բարձր տեմպերի հետևանքով մի շարք մթերքների արտադրությունը վնա-
սաբեր է:

Անասնապահական արտադրանքի ինքնարժեքի բարձրացման հիմնական պատ-
ճառն աշխատանքի արտադրողականության նկատմամբ վարձատրության ավելի ա-
րագ աճն է, ինչպես նաև կերերի ինքնարժեքի աճը: Այդ առումով մեծ նշանակություն
ունի գյուղատնտեսական արտադրության և մթերումների փոխադրումը տնտհաշվար-
կի և դրա հիման վրա կոլեկտիվ կապալը, որն աշխատանքի վարձատրությունը կա-
պակցում է վերջնական արդյունքի հետ:
Կապալային կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի աշխատանքի վարձատրության
կապակցումը վերջնական արդյունքի հետ հանգեցնում է նրան, որ տնտեսություն-
ներում ամրապնդվում է կարգապահությունը, բարելավվում արտադրության կուլ-
տուրան, ավելի ռացիոնալ են օգտագործվում կերերը: Կապալի ներդրումն առանձ-
նակի նշանակություն ունի լեռնային և նախալեռնային շրջաններում, որովհետև այս-
տեղ անասնապահների կադրերի սուր պակաս կա, իսկ հողատարածությունների
սահմանափակությունը պահանջում է կերերի առավել խնայողաբար ծախսում,
դրանց պատրաստման տեխնոլոգիայի խստիվ պահպանում, արտադրական բոլոր աշ-
խատանքների ավելի որակով կատարում:
ՍՄԿԿ Կենտկոմը «Աշխատանքի կազմակերպման ռացիոնալ ձևերի և տնտհաշ-
վարկի ներդրման հիման վրա գյուղատնտեսությունում աշխատանքի արտադրողա-
կանության բարձրացմանն ուղղված անհետաձգելի միջոցառումների մասին» 1986
թվականին ընդունած իր որոշման մեջ նշել է, որ շատ կոլեկտիվ և պետական տըն-
տեսություններում տնտհաշվարկն ու կոլեկտիվ կապալն արդեն այժմ, ապահովելով
իրենց աշխատանքի արդյունքի նկատմամբ մեխանիզատորների, անասնապահների
և այլ աշխատողների անձնական շահագրգռությունը, էապես ներգործում են հան-
րային արտադրության վրա:
Լենինի այն ցուցումը, որ ապրանքների արտադրությանը և վաճառքին մասնակ-
ցող բոլոր կողմերի շահերի ճիշտ զուգակցումը սոցիալիստական տնտեսավարման
հիմնական պայմաններից մեկն է, իր արտացոլումը գտավ ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ.
մայիսյան պլենումի փաստաթղթերում:
Սակայն ճշմարտությունը պահանջում է նշել, որ վերջին տասնամյակների ըն-
թացքում լավ որոշումներ շատ են ընդունվել, սակայն դրանք մինչև վերջ չեն իրա-
կանացվել: Միաժամանակ ճշմարիտ է նաև այն, որ շատ որոշումներ էլ կոմպլեք-
սային բնույթ չեն կրել, վերաբերվել են ագրոարդյունաբերական համալիրի այս



կամ այն մասնավոր հարցերին, պրոբլեմներին, հաճախ չեն ապահովվել անհրաժեշտ
նյութական ու ֆինանսական միջոցներով, տնտեսագիտական և կազմակերպչական
աշխատանքով: Եվ հետևանքը եղավ այն, որ պարենային պրոբլեմի սրությունը դեռ-
ևս չի վերացված: Եվ այսօր վիթխարի ջանքեր են գործադրվում բնակչությանը
սննդամթերքով, իսկ արդյունաբերությանը գյուղատնտեսական անհրաժեշտ հումքով
ապահովելու ծրագիրը հաջողությամբ իրականացնելու համար: Պրոբլեմի արմատա-
կան լուծման համար մշակվել և իրականացվում է հատուկ պարենային ծրագիր, որի
նպատակն է հնարավորին չափ սեղմ ժամկետներում երկրի բնակչությանը հուսա-
լիորեն ապահովել պարենի բոլոր տեսակներով, սննդի կառուցվածքը էականորեն
բարելավել առավել արժեքավոր մթերքների հաշվին: Պարենային ծրագրի իրակա-
նացման հիմքն են կազմում գյուղատնտեսության հետագա վերելքը, ագրոարդյունա-
բերական համալիրի բոլոր ճյուղերի արդյունավետության բարձրացումը:
ՍՄԿԿ XXVII համագումարը երկրի ագրոարդյունաբերական համալիրին առա-
ջադրեց պատասխանատու խնդիրներ: Ագրարային սեկտորում հարկավոր է հասնել
վճռական բեկման, որպեսզի արդեն ընթացիկ հնգամյակում նկատելիորեն բարե-
լավվի պարենային ապրանքների արտադրությունը և մատակարարումը: Իսկ դրա
համար անհրաժեշտ է կրկնապատկել գյուղատնտեսական արտադրության աճի տեմ-
պերը:
Միայն վերջին երկու տարում երկրում հացահատիկի միջին տարեկան արտա-
դրությունը անցած հնգամյակի համեմատությամբ ավելացել է 17 տոկոսով, շաքարի
ճակնդեղինը՝ 11, արևածաղկինը՝ 14, մսինը՝ 13, կաթինը և ձվինը՝ 9 տոկոսով:
Հայկական ՍՍՀ-ում գյուղատնտեսության համախառն արտադրանքի միջին տա-
րեկան ծավալը տասներկուերորդ հնգամյակում ընդհանուր առմամբ կմեծանա 12,1
տոկոսով: 1990 թվականին հացահատիկի արտադրությունը կհասցվի մինչև 330
հազար տոննայի, բանջարեղենինը՝ 500 հազար, մսինը՝ 130 հազար, կաթինը՝ 625
հազար տոննայի: Հետևաբար, հանրապետության կոլեկտիվ և պետական տնտե-
սությունները պարտավոր են արտադրության բոլոր ռեզերվներն օգտագործել գյու-
ղատնտեսական մթերքների արտադրությունը և պետությանը դրանց վաճառքն էա-
կանորեն ավելացնելու համար:
Տեղաշարժերն առկա են, սակայն անաչառ կերպով գնահատելով արվածը,
հարկավոր է ուղղակի խոստովանել, որ մենք առայժմ չենք կարողանում լիովին բա-
վարարել սովետական մարդկանց պահանջմունքները բազմապիսի բարձրորակ սըն-
դամթերքների ու նախ և առաջ կենդանական ծագում ունեցող սննդամթերքների
նկատմամբ:
Այս պրոբլեմի լուծման գործում կարևոր դեր ունի տնտեսագիտությունը:
Կառավարման տնտեսագիտական մեթոդների շարքում էական նշանակություն է
ստանում պարենհարկը, որի մասին լենինյան գաղափարը հրատապ է նաև մեր
օրերում: Այդ է վկայում ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Երկրի
ագրոարդյունաբերական կոմպլեքսում տնտեսավարման մեխանիզմի հետագա կա-
տարելագործման մասին» որոշումը, որտեղ նշված է՝ անհրաժեշտ է ասպարեզ տալ
տնտեսագիտական մեթոդներին, լրիվ տնտհաշվարկի միջոցով զգալիորեն ընդլայնել
կոլեկտիվ և պետական տնտեսությունների ինքնուրույնությունը, բարձրացնել նրանց
շահագրգռությունն ու պատասխանատվությունը վերջնական արդյունքների համար:
Կոլեկտիվ և պետական տնտեսությունների համար սահմանվում են պետությանը մա-
տակարարվելիք մթերքների տարեկան հաստատուն ծավալները, իսկ գյուղատնտե-
սական մթերքների ավելցուկները նրանք կարող են իրացնել սպառողական կոոպե-
րացիայի միջոցով կամ այլ ուղիներով:
Նախատեսվում է պլանավորման նոր մեթոդների լայն ներդրում, որի դեպքում
պլանավորումը պետք է կատարվի գյուղատնտեսական մթերքների մատակարա-
րումների վերաբերյալ ստուգիչ թվերի հիման վրա: Իրականացվում է անցում դեպի
արտադրության ծավալների պլանավորման և գյուղատնտեսական արտադրանքի
մթերումների, ինչպես նաև միջոցների նորմատիվային մեթոդը՝ հաշվի առնելով հողի
տնտեսական գնահատումը:
Արտադրությունն ավելացնելու և բնակչությանը պարենի մատակարարումը բա-
րելավելու նպատակով տեղական մարմինների տրամադրության տակ են թողնվում
միութենական ու հանրապետական ֆոնդերի համար նախատեսված մատակարա-

րումների պլանների կատարումից հետո մնացած մսի, կաթի և այլ արտադրանքի
ռեզերվները:

Այդ նպատակով կոլեկտիվ և պետական տնտեսություններին թույլատրվում է
սպառողական կոոպերացիայի կազմակերպություններին և կոլտնտեսային շուկանե-
րում, գնումների պլանի կատարման հաշվին, վաճառել կարտոֆիլի, բանջարեղենի և
բուսաբուծության այլ մթերքների գնումների պլանային ծավալի մինչև 30 տոկոսը,
ինչպես նաև արտապլանային ամբողջ արտադրանքը:

Պտուղբանջարեղենի արտադրանքի իրացման նոր կարգն արդեն առաջին տա-
րում ցույց տվեց իր բարձր արդյունավետությունը, որի վկայությունն են Մոսկվայում
և արդյունաբերական այլ կենտրոններում անցկացված տոնավաճառները, որոնց ակ-
տիվորեն մասնակցեցին նաև մեր հանրապետության տնտեսությունները: Տոնավա-
ճառները այդ քաղաքների բնակչությանը հնարավորություն ընձեռեցին ձեռք բերելու
թարմ բանջարեղեն և բարձրորակ մրգեր, նպաստեցին այդ մթերքների գների իջեց-
մանը կոլտնտեսային շուկաներում, պակասեցրին արտադրանքի կորուստները տնտե-
սություններում, բարձրացրին վերջինների եկամուտները:

ՍՄԿԿ XXVII համագումարում ընդգծվեց գյուղատնտեսական արտադրանքը
պահպանելու և այն նվազագույն կորուստներով սպառողին հասցնելու կարևորու-
թյունը: Հաշվարկված է, որ լրիվ հասունացած հացահատիկային կուլտուրաների
բերքահավաքի ձգձգումը 10 օրով բերքի մինչև 22 տոկոսով կորստի պատճառ է
դառնում: Զգալի են բերքահավաքի, փոխադրման, մթերման և պահպանության ըն-
թացքում կարտոֆիլի, բանջարեղենի ու մրգերի կորուստները, որոնք երբեմն հաս-
նում են դրանց համախառը բերքի մինչև 50 տոկոսի:

Ուստի կորուստների դեմ պայքարը կարևոր ռեզերվ է: Հայտնի է, որ արդեն
արտադրված արտադրանքի պահպանումը ավելի քիչ ջանք և միջոցներ է պահան-
ջում, քան նրա արտադրությունը:

Կորուստների նվազեցման և արտադրանքի որակի բարձրացման գործում կա-
րևոր դեր է պատկանում նաև մթերումների կազմակերպման այնպիսի արգասավոր
ձևերին, ինչպիսիք են սպառողների հետ արտադրողների ուղղակի կապը և արտա-
դրանքի ընդունումն անմիջականորեն արտադրության վայրերում ու դրանց տե-
ղափոխումը մթերող կազմակերպությունների տրանսպորտով:

Արդյունաբերական ձեռնարկությունների և առևտրական կազմակերպությունների
հետ կոլեկտիվ ու պետական տնտեսությունների ուղղակի կապերը հնարավորություն
են տալիս նվազեցնելու շրջանառության ծախքերը, կրճատելու արդյունաբերական
ձեռնարկություններին ու առևտրական ցանցին մթերքներ և հումք մատակարարելու
ժամկետները, ինչպես նաև նպաստում են գյուղատնտեսական արտադրանքի, ա-
ռանձնապես արագ փչացող մթերքների որակի պահպանմանը:

Ուղղակի կապերի հաստատման գործում կարևոր դեր ունի գյուղատնտեսական
մթերքների փոխադրման տեխնոլոգիական պրոցեսների դիսպետչերացումը: Այդպիսի
ծառայությունը կարող է նպաստել արագ փչացող մթերքներն ըստ պայմանագրերի
և մատակարարման ժամկետացանկի ռիթմիկ կերպով մանրածախ առևտրական ցանց
հասցնելուն:

Ուղղակի կապերի զարգացումը էական նշանակություն ունի նաև անասնապա-
հական մթերքների մթերման գործում: Դրանք անասունների, կաթի, բրդի և կաշվի
հումքի պահպանման լավ պայմաններ են ստեղծում, ապահովում վերամշակող ձեռ-
նարկությունների ռիթմիկ աշխատանքը, կրճատում տրանսպորտային և մթերման
հետ կապված ծախսերը: Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ եթե կաթի ընդու-
նումը կազմակերպվի անմիջականորեն, կոլեկտիվ ու պետական տնտեսությունների
ֆերմաներում և այն փոխադրվի կենտրոնացված կարգով, մթերման կազմակերպու-
թյունների տրանսպորտով, ապա նորակիթ կաթի պաղեցման և այդ ձևով նրա փո-
խադրման շնորհիվ առաջին տեսակի կաթի ստացումը կավելանա 25—30 տոկոսով:

Բայց անասունների, մսի ու կաթի ընդունման այդ նոր և տնտեսական առումով
ավելի շահավետ համակարգին լիովին անցնելու համար ժամանակ է պահանջվում
բավարար քանակությամբ մասնագիտացված տրանսպորտային միջոցներ արտա-
դրելու և տնտեսություններում համապատասխան բեռնման-բեռնաթափման հար-
թակներ, մատույցի ուղիներ և այլ հարմարանքներ պատրաստելու համար:

Արտադրանքի բարձր որակի պահպանման համար անհրաժեշտ է էականորեն
բարելավել մթերումների կազմակերպումը և ամենից առաջ ուժեղացնել նյութատեխ-
նիկական բազան, տրանսպորտի աշխատանքը: Մթերման կազմակերպություններում,



ինչպես նաև հենց կոլեկտիվ և պետական տնտեսություններում բավարար քանակով
բանջարեղենի ու կարտոֆիլի պահեստարաններ չլինելու պատճառով այդ կուլտուրա-
ների համախառն բերքի զգալի մասը փչանում է գնորդին չհասած: Այս գործում կա-
րևոր նշանակություն ունի նաև ամբողջ մթերման ապարատի ժամանակին նախա-
պատրաստվելը սեզոնին: Մթերման կազմակերպությունները, առևտրի մինիստրու-
թյունը, ագրոարդը և Հայկոոպը պետք է ժամանակին նախապատրաստեն ընդուն-
ման կետերը և բազաները, պահեստարանները, ամենուրեք բացեն բանջարեղենի,
կարտոֆիլի և արագ փչացող այլ մթերքների մասնագիտացված խանութներ, տաղա-
վարներ ու կրպակներ, լուծեն տարայի և տեղափոխման հարցերը:

Պետք է նշել նաև, որ հանրապետությունում ոչ միայն անբավարար է պահես-
տարանների ծավալը, այլև դրանց մեծ մասը վերակառուցման կարիք է զգում, որով-
հետև չի համապատասխանում արտադրանքի ռացիոնալ պահպանության տեխնոլո-
գիական պահանջներին: Կարտոֆիլի պահեստարանների ավելի քան 65 տոկոսը
բնական ու արհեստական պաղեցման, ակտիվ օդափոխության համար անհրաժեշտ
սարքավորումներ չունի:

Վերջին տարիներին որոշ չափով ընդլայնվեց և բարելավվեց մթերման կազմա-
կերպությունների նյութատեխնիկական բազան: Սակայն դա բնավ բավարար չէ ա-
րագ փչացող արտադրանքի պահպանումը լիովին ապահովելու համար: Այդ ուղղու-
թյամբ դեռ շատ անելիքներ կան: Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ նպատա-
կահարմար է ժամանակակից սարքավորումներով կարտոֆիլի պահեստարաններ
ունենալ կարտոֆիլի մշակման հիմնական շրջաններում և հանրապետության այնպի-
սի գյուղատնտեսական գոտիներում, ինչպիսիք են, օրինակ, Լոռի-Փամբակը և Սևա-
նը:

Ծարունակվում է ագրոարդյունաբերական համալիրի տնտեսական մեխանիզմը
և կառավարումը կատարելագործելու աշխատանքը: Այդ հարցերը խորությամբ քըն-
նարկվեցին ՍՄԿԿ Կենտկոմում վերջերս տեղի ունեցած խորհրդակցությունում: Լրիվ
տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման անցնելը էապես ընդլայնում է գյուղական
տնտեսությունների տնտեսական ինքնուրույնությունը, ձեռներեցության և սոցիալիս-
տական նախաձեռնության զարգացման լայն հնարավորություններ ընձեռում: Դա
նոր զարկ կտա գյուղատնտեսության և ամբողջ ագրոարդյունաբերական համալիրի
վերելքին, կբարձրացնի ինչպես կառավարման կենտրոնական օղակի, այնպես էլ
շրջանների, կոլեկտիվ ու պետական տնտեսությունների, ագրոարդյունաբերական
միյուս ձեռնարկությունների դերն ու պատասխանատվությունը: Այդ ամենի հուսալի
երաշխիքը պարենային պրոբլեմի լուծման լենինյան սկզբունքների հետևողական
պահպանումն ու կիրառումն է:

# ԱՆԴՐԿՈՎԿԱՍՅԱՆ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՄԱՄՈՒԼԻ ՊԱՅՔԱՐԸ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԴԻՐՔՈՐՈՇՄԱՆ ՀԱՄԱՐ

**Հ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ**

ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՄԱՄՈՒԼԻ տարեգրությունը կուսակցության պատմության հայելին է: Իր անցած ճանապարհի յուրաքանչյուր փուլում բոլշևիկյան պարբերական մամուլն արտացոլել է հեղափոխական շարժման ամենահրատապ ու կենսական պրոբլեմները, պայքարել օպորտունիստական, հակահեղափոխական, բուրժուական և մանրբուրժուական մամուլի հրապարակումների դեմ, լայն պրոպագանդիստական ու ագիտացիոն աշխատանք է տարել աշխատավորական մասսաների շրջանում, ակտիվ մասնակցել կուսակցության տակտիկայի և ստրատեգիայի մշակմանն ու կենսագործմանը:

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Ռուսաստանի, աշխարհի բոլոր ժողովուրդների ուշադրության կիզակետում էին իմպերիալիստական սպանդի դադարեցման, դեմոկրատական հաշտության կնքման հարցերը: Հիրավի, արդիական նշանակություն ունի Անդրկովկասի բոլշևիկյան մամուլի ծավալած հակապատերազմական գործունեության ուսումնասիրությունը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության անմիջական նախապատրաստման ու անցկացման ժամանակաշրջանում: Կուսակցության VI համագումարն իր «Ընթացիկ մոմենտն ու պատերազմը» բանաձևում շեշտեց, որ «Միջազգային պրոլետարիատի համար պատերազմն իրոք դեմոկրատական ճանապարհով վերացնելու միակ եղանակը նրա կողմից իշխանության նվաճումն է, իսկ Ռուսաստանում նրա նվաճումն է բանվորների ու չքավոր գյուղացիների կողմից»:

Կուսակցության VI համագումարի որոշումների պրոպագանդման, պատերազմի և խաղաղության լենինյան դրույթների պարզաբանման գործում մեծ դեր խաղաց անդրկովկասյան բոլշևիկյան պարբերական մամուլը: «Կավկազսկի ռաբոչի», «Բակինսկի ռաբոչի», «Բրձոլա», «Բանվորի կռիվը», «Հումմեթ» և մյուս բոլշևիկյան թերթերը հանդես եկան ակտիվ պրոպագանդիստական նյութերով:

Հատկապես բնորոշ էին Փ. Ջափարիձեի «Նամակ համագումարից», «Համագումարի մասնակցի տպավորությունները» հոդվածները, որոնցում նա ընթերցողներին մանրամասնորեն ծանոթացնում էր համագումարի աշխատանքների, նրանում ընդունված կարևորագույն որոշումների հետ: «Մեր այսօրվա լոզունգը» հոդվածով հանդես եկավ Տ. Շահբազին, որը հանգամանորեն ցույց էր տալիս, թե «Ամբողջ իշխանությունը սովետներին» լոզունգի ժամանակավորապես հանելը կապված էր հեղափոխության խաղաղ զարգացման փուլի ավարտի և սովետների էսէռամենշևիկյան ղեկավարության դավաճանության հետ»:

1917 թ. ամռանը երկրում քաղաքական դրությունն է՛լ ավելի էր բարդացել: Ներքին հակահեղափոխական ուժերը, առաջին հերթին՝ կադետները, օգոստոսի 12-ին Մոսկվայում հրավիրելով պետական խորհրդակցություն, Անտանտի իմպերիալիստների հովանավորությամբ երկրում նախապատրաստում էին Կոռնիլովի միապետական գեներալական դավադրությունը: Օգոստոսի 21-ին բանակի գերագույն գլխավոր հրամանատար Լ. Կոռնիլովը գերմանացիներին հանձնեց Ռիգան՝ մեղքը բարդելով հեղափոխական բանակի և այն «կազմալուծող» բոլշևիկների վրա: Օգոստոսի 25-ին նա զորքերը շարժեց դեպի Պետրոգրադ՝ բոլշևիկների հետ հաշվեհարդար տեսնելու և սովետները վերացնելու մտադրությամբ: Հեղափոխության գլխին մահացու սպառնալիք կախվեց: Թեև Կերենսկին Կոռնիլովին խռովարար հայտարարեց, սակայն ժամանակավոր կառավարությունն ուժ չուներ և չփորձեց էլ կանխել միապետական խռովությունը: Այն ջախջախվեց ու արագ վերացվեց Պետրոգրադի և ողջ երկրի հեղափոխական զանգվածների կողմից, որոնց կազմակերպեցին ու գլխավորեցին բոլշևիկները: Այդ խռովության դեմ պայքարի ժամանակ սովետները դարձան հեղափոխական ուժերի համախմբման և կազմակերպման կենտրոններ: Օգոստոսի 31-ին Պետրոգրադի, սեպտեմբերի 5-ին Մոսկվայի, իսկ սեպտեմբերի առաջին կեսերին հիմնական արդյունաբերական քաղաքների սովետների ղեկավարությունն անցավ բոլշևիկների ձեռքը: Բոլշևիկյան կուսակցությունը նորից օրակարգի մեջ դրեց «Ամբողջ իշխանությունը սովետներին» լոզունգը:

Անդրկովկասում կոռնիլովյան խռովության լուրն առաջ բերեց աշխատավորության դժգոհության և վրդովմունքի մասսայական ալիք: Բոլշևիկների ղեկավարությամբ Ալեքսանդրապոլում, Ղարսում, Երևանում, Սարիղամիշում ստեղծվեցին կոռնիլովշչինայի դեմ պայքարի արտակարգ հանձնաժողովներ: 1917 թ. օգոստոսի 29-ին ՌՍԴԲ(բ)Կ Բաքվի կոմիտեի արտակարգ նիստում կոռնիլովյան խռովության դեմ ուղղված զեկուցումով հանդես եկավ Ստ. Շահումյանը: Իր խոսքն ասաց նաև Անդրկովկասի բոլշևիկյան մամուլը, որը, վճռականորեն հանդես գալով կոռնիլովյան դավադրության դեմ, աշխատավորությանը պարզաբանում էր, որ այն սովետների էսէռամենշևիկյան ղեկավարության համաձայնողական քաղաքականության տրամաբանական հետևանքն էր: «Բակինսկի ռաբոչի»-ում հանդես եկավ Ա. Ամիրյանը, որը մերկացնելով Կոռնիլովի ռեակցիոն քայլի ողջ էությունը, գրեց. «Այն փաստը, որ Կոռնիլովը ռազմաճակատից բանակները հանեց հեղափոխությունը ճնշելու համար, այսինքն՝ գործնականում Վիլհելմի հաղթանակը գերադասեց ռուս ժողովրդի հաղթանակից... մեզ համար պարզ տեսարան է ստեղծում»: Կոռնիլովյան խռովության և այն ոգեշնչող կադետական կուսակցության քննադատությամբ «Հումմեթի» էջերում հանդես եկավ Տ. Շահբազին:

Այդ խռովությունն ալեկոծեց նաև կովկասյան բանակը: Տեղի էին ունենում բազմաթիվ ժողովներ, միտինգներ և ցույցեր, որոնցում զինվորներն իրենց վրդովմունքն էին հայտնում միապետական դավադրության նկատմամբ: Բանակի այս տրամադրություններն իրենց արտահայտությունն էին գտնում անդըրկովկասյան բոլշևիկյան թերթերում («Կավկազսկի ռաբոչի», «Բակինսկի ռաբոչի», Սարիղամիշի «Սոցիալ-դեմոկրատ»): Այսպես, օրինակ, «Սոցիալ-դեմոկրատը» տպագրեց քաղաքի բոլոր գնդերի, ջոկատների, վաշտերի բոլշևիկյան կոմիտեների օգոստոսի 30-ին կայացած ժողովի որոշումը Կոռնիլովի ելույթի մասին, որտեղ մասնավորապես ասված էր, որ ժողովը բոլոր հնարավոր միջոցներով պատրաստ է աջակցելու հակահեղափոխության դեմ ուղղված պայքարին: Այդ օրերին անդրկովկասյան բոլշևիկյան պարբերականներն իրենց էջերում հանդես եկան նաև բուրժուական և մանրբուրժուական մամուլի կողմից տարածվող այն կեղծիքի դեմ, թե, իբր, Ռիգան գերմանացիներին է հանձնըվել բոլշևիկների կազմալուծիչ գործունեության, զինվորների և նավաստիների դավաճանության հետևանքով: Այս հարցի կապակցությամբ «Բակինսկի ռաբոչիում» հանդես եկան Ստ. Շահումյանը, Ա. Ամիրյանը և Ա. Գուլոյանը, «Կավկազսկի ռաբոչիում» Ս. Քավթառաձեն, որոնք հավաստի տվյալներով պարզաբանում էին, որ, ընդհակառակը, Ռիգայի տակ մարտնչող բոլշևիկյան զորամասերը ցուցաբերել են առանձնակի քաջություն և խիզախություն: Մասնավորապես Ա. Գուլոյանն իր «Որտե՞ղ պետք է փնտրել պարտության մեղավորներին» հոդվածում, քննադատելով կենտրոնի մանրբուրժուական «День» և մենշևիկյան «ЕДИНСТВО» թերթերի կեղծիքները, գրում էր. «Ռուսաստանի պարտության մեջ մեղավոր են ոչ թե նավաստիներն ու զինվորները, այլ Կերենսկու հակահեղափոխական կառավարությունը, որն աննպատակ կերպով ձգձգում է իմպերիալիստական պատերազմը, ցարական դրածո գեներալները, որոնք Տերնոպոլի, Ռիգայի մոտ թըշնամու առջև բաց են անում ճանապարհը դեպի հեղափոխական Պետրոգրադ»: «Բակինսկի ռաբոչին», մեկ անգամ ևս անդրադառնալով այդ հարցին և քննադատելով տեղի բուրժուական «Բաքու» և էսէռամենշևիկյան «Իզվեստիա» թերթերը, շեշտում էր. «Ո՞ւմ հայտնի չէ, որ բոլշևիկյան գնդերը Ռիգայի ճեղքման ժամանակ կռվելով մինչև արյան վերջին կաթիլը՝ կորցրել էին իրենց կազմի երկու երրորդ մասը»: Անդրկովկասյան բոլշևիկյան մամուլում կոռնիլովյան խռովության էության մեկնաբանումն ու քննադատությունը նպաստեցին Անդրկովկասում մասսաների ձախացմանն ու հեղափոխական շարժման վերելքին:

1917 թ. աշնանը երկրում հասունանում էր համազգային ճգնաժամը: Երեք տարի շարունակվող իմպերիալիստական պատերազմը քայքայել էր Ռուսաստանի տնտեսությունը: Աշխատավորության վիճակը գնալով ծանրանում էր: Չտեսնված չափերի էր հասել սպեկուլյացիան, քայքայվել էր տրանսպորտը: Բանվորական ընտանիքները սովահար էին լինում: 1917 թ. ֆաբրիկա-գործարանային արտադրության համախառն արտադրանքը կրճատվել էր մոտավորապես 1/3-ով: Միայն 1916—1917 թթ. պատերազմը կլանեց Ռուսաստանի ազգային եկամտի 49,3 տոկոսը: Շարունակվում էր գյուղատնտեսական արտադրանքի կրճատումը:

---

ԱԼԵՔՍԱՆՅԱՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ԶԱՎԵՆԻ— պատմական գիտությունների թեկնածու:

1917 թ. աշնանը Անդրկովկասի բոլշևիկները բազմակողմանիորեն քննարկում էին նաև իմպերիալիստական պատերազմի հետևանքները, ցույց տալիս նրա ավերիչ ազդեցությունը երկրի տնտեսության վրա, կոնկրետ փաստերով պարզաբանում էին բանվորների, զինվորների ու գյուղացիների կենսամակարդակի չտեսնված անկման իրական պատճառները: Այսպես, օրինակ, «Պատերազմը և տնտեսական աղետը» հոդվածով «Բրձոլա» թերթում հանդես եկավ Ֆ. Մախարաձեն՝ մատնանշելով, որ պատերազմը Ռուսաստանին կանգնեցրել է իսկական տնտեսական աղետի առջև: «Այդ դրության ելքը միայն պատերազմի դադարեցման մեջ է»: Իսկ «Հումմեթը», «Պատերազմի ծախսերը» հոդվածում (1917, 22 օգոստոսի) փաստացի տվյալներով ընթերցողներին էր ներկայացնում մարդկային զոհերի և պատերազմող երկրների պարտքերի իրական չափերը: Պատերազմի և տնտեսական դրության մեկնաբանմամբ «Նեցուկ» թերթում հանդես եկավ Ս. Մանդինյանը, որը օգտվելով Շուշիի գավառի գյուղացիության մոբիլիզացման վերաբերյալ Բաքվի կուլտուրական միության հանձնարարությամբ կազմած հարցաթերթի տվյալներից, ցույց էր տալիս աշխատունակ ձեռքերի մոբիլիզացման հետևանքով առաջացած վիճակը գյուղում:

Բոլշևիկյան պարբերականները հանգամանորեն քննարկում էին Անդրկովկասում ընտեղծված դրությունը, ցույց տալիս շարունակվող պատերազմի ծանր ազդեցությունը բանվոր դասակարգի վրա: Այսպես, «Նոր կյանքը» 1917 թ. հուլիսի 2-ի համարում «Կորչի պատերազմը» վերնագրով առաջնորդողում գրում էր, որ պատերազմը ծայր աղքատության գիրկն է նետել բանվորությանը, իսկ «Նեցուկը» (1917, 7 սեպտեմբերի) նշում էր՝ պատերազմի [illegible] քաղաքներն աստիճանաբար ավելի ու ավելի քիչ պարեն է մտնում:

Անդրկովկասի տնտեսությանը իմպերիալիստական պատերազմի պատճառած վնասների բացահայտմամբ հանդես եկան նաև «Կավկազսկի ռաբոչին», «Բակինսկի ռաբոչին» և մյուս բոլշևիկյան թերթերը:

1917 թ. աշնանը երկրամասում սովետների բոլշևիկացումը ավելի դանդաղ էր ընթանում, քան կենտրոնում: Այստեղ սովետներում տեր ու տնօրեն էին մենշևիկներն ու էսէռները, իսկ որոշ վայրերում՝ նույնիսկ դաշնակցականները: Դրա պատճառներից մեկն այն էր, որ հաճախ էսէռներն ու մենշևիկները դաշն էին կնքում տեղի բուրժուաազգայնական կուսակցությունների հետ՝ ընդդեմ բոլշևիկների, իսկ այդ կուսակցությունները դեռևս քիչ ազդեցություն չունեին աշխատավորության շրջանում: Բացի այդ, VI համագումարից հետո դեռ որոշ ժամանակ Անդրկովկասի բոլշևիկների վարած տակտիկան զերծ չէր սխալներից: Մասնավորապես նրանք շարունակում էին հարել «Ամբողջ իշխանությունը սովետներին» հին տակտիկական լոզունգին, որն ապակողմնորոշում էր հեղափոխական զանգվածներին: Սակայն այդ ամենը կրեց ժամանակավոր բնույթ, և Անդրկովկասի բոլշևիկները, ղեկավարվելով VI համագումարի որոշումներով, աշխատավորական զանգվածներին նախապատրաստում էին զինված ապստամբության: Այս հարցում կարևոր նշանակություն ուներ էսէռամենշևիկյան սովետների քննադատությունը, նրանց հակահեղափոխական գործունեության բացահայտումը: Բոլշևիկները պահանջում էին սովետների վերընտրություն, և այդ հարցում անգնահատելի դեր ունեին անդրկովկասյան բոլշևիկյան թերթերը, որոնք հանդես էին գալիս որպես անխոնջ պրոպագանդիստներ և ագիտատորներ, աշխատավորության հեղափոխական պայքարի կազմակերպիչներ: Այսպես, օրինակ, «Բրձոլան», քննադատելով էսէռներին և մենշևիկներին, գրում էր. «Սոցիալիստները պարզվում են պատերազմի ժամանակ»: Այնուհետև նշելով, որ ոչ բոլոր իրենց սոցիալիստ անվանողները կարող են իրականում սոցիալիստ համարվել, թերթը, մատնացույց անելով էսէռների և մենշևիկների առաջնորդների հակահեղափոխական գործունեությունը, ուղղակի հարց էր բարձրացնում «Բայց կարո՞ղ ենք արդյոք սոցիալիստներ համարել Կերենսկուն, Ծերեթելուն..., Չեռնովին: Երբե՛ք, նրանք բանվոր դասակարգի անհաշտ թշնամիներն են»: Մենշևիկների և էսէռների քննադատությամբ հանդես եկավ նաև «Կավկազսկի ռաբոչին», որը նրանց որակում էր որպես «սոցիալիստներ միայն խոսքով, իսկ գործնականում՝ բուրժուազիայի սպասարկուներ»:

Իսկ Սարիղամիշի «Սոցիալ-դեմոկրատում» մենշևիկների և էսէռների համաձայնողական քաղաքականությունն էին մերկացնում Ս. Ալավերդյանը և մյուս բոլշևիկները:

Մանրբուրժուական կուսակցությունների հակահեղափոխական էության բացահայտման գործում մեծ նշանակություն ուներ Անդրկովկասի բոլշևիկյան պարբերականներում Վ. Ի. Լենինի աշխատությունների տպագրումը: Բավական է նշել, որ միայն 1917 թ. մարտ-հոկտեմբերին «Կավկազսկի ռաբոչին» տպագրեց Վ. Ի. Լենինի 34 հոդված, ելույթ և այլ փաստաթղթեր, «Բակինսկի ռաբոչին»՝ 30 աշխատություն, իսկ «Բրձոլա» թերթում հունիս-հոկտեմբեր ամիսներին տպագրվեց Վ. Ի. Լենինի գրչին պատկանող 18 հոդված: Մեծ առաջնորդի բազմաթիվ հոդվածներ և ելույթներ տպագրվեցին նաև «Հումմեթ», «Բանվորի կռիվը», «Նեցուկ» և մյուս բոլշևիկյան թերթերում: 1917 թ. հունիսին «Պայքարին» աշխատակցող բոլշևիկները թերթում տպագրեցին Վ. Ի. Լենինի կենսագրությունը, որը հայերեն լեզվով նրա կենսագրությունը հրատարակելու առաջին օրինակն էր: «Բակինսկի ռաբոչին» (1917, 29 սեպտեմբերի) աշխատավորներին ներկայացնելով Վ. Ի. Լենինի աշխատությունները, գրում էր. «Ընկեր բանվորներ, կարդացեք Լենինի հոդվածները ուշադրությամբ: Դա լավագույնն է, ինչ կարող է տալ ներկա մարքսիստական գրականությունը: Ոչ միայն կարդացեք, այլև ուսումնասիրեք այն, ինչ նա ասում է, և այն ժամանակ դուք կտեսնեք, թե ինչքան նրա հետ համեմատած գռեհիկ ու շուկայական են այդ կերենսկիների, ծերեթելիների, սկոբելևների գրվածքները և ելույթները»:

1917 թ. աշնանը անդրկովկասյան բոլշևիկյան մամուլը չթուլացող եռանդով աշխատանք էր տանում նաև կովկասյան բանակում: Բոլշևիկյան թերթերը, մերկացնելով էսէռամենշևիկյան կուսակցությունների հակահեղափոխական էությունը, նվաճում էին ավելի ու ավելի մեծ թվով զինվորական զանգվածներ: Այդ ամենը մեծ անհանգստություն էր պատճառում տեղական իշխանություններին ու էսէռամենշևիկյան երկրամասային սովետին, որոնք ձգտում էին ամեն կերպ խափանել և արգելել բոլշևիկյան թերթերի տարածումը բանակում: Այդ թերթերի դեմ կիրառվող հալածանքն առաջացնում էր զինվորների վրդովմունքն ու զայրույթը, որոնք բազմաթիվ ժողովներում, միտինգներում, նամակներում հանդես էին գալիս բոլշևիկյան մամուլի պաշտպանությամբ: Այսպես, օրինակ, 1-ին կովկասյան աշխատանքային գումարտակի 6-րդ վաշտի զինվորների 1917 թ. հոկտեմբերի ընդհանուր ժողովն իր որոշման մեջ պահանջում էր անհապաղ հանել ուզմաճակատ գնացող բոլշևիկյան մամուլի օրգանների վրա դրված արգելքները: Հոկտեմբերի 15-ին կովկասյան ռուսումնագնդացրային անձնակազմի ընդհանուր ժողովը, լսելով բոլշևիկ զինվոր Գ. Կիվկուցանի զեկուցումը երկրամասային սովետի գործունեության մասին, բանաձև է ընդունում, որտեղ պահանջում է «դադարեցնել հետապնդումը բոլշևիկյան կուսակցության նկատմամբ և հանել արգելքը նրանց մամուլի վրայից»: Մեկ այլ զինվորական ժողովի որոշման մեջ՝ 5-րդ կովկասյան բանակային կորպուսի 1-ին սպառողական պարենային վաշտային կոմիտեն դիմում էր «Կավկազսկի ռաբոչիի» խմբագրությանը՝ խնդրելով արագացնել թերթի առաքումը և միաժամանակ իր բողոքն է հայտնում բոլշևիկյան մամուլի նկատմամբ կիրառվող բռնությունների կապակցությամբ:

Անդրկովկասյան բոլշևիկյան պարբերական մամուլը պատերազմի և խաղաղության հարցերում քննադատում էր ոչ միայն ժամանակավոր կառավարությանն ու նրա կամակատար մանրբուրժուական կուսակցություններին, այլև հանդես էր գալիս ավելի լայն մասշտաբներով՝ մերկացնելով իմպերիալիստական բուրժուազիային և բոլոր երկրների սոցիալշովինիստներին՝ պաշտպանելով միջազգային պրոլետարիատի պայքարն ընդդեմ պատերազմի, հանուն դեմոկրատական հաշտության: Այսպես, օրինակ, «Միջազգային պրոլետարիատը և միջազգային բուրժուազիան» հոդվածով «Նեցուկ» թերթում հանդես եկավ Հ. Բեջանյանը (Հ. Կամարի), «Դավաճաննե՞ր, թե՞ գիտակից պրոլետարներ» հոդվածով «Կավկազսկի ռաբոչիում» Վ. Սոկոլնիկովը: Նրանք, ներկայացնելով միջազգային պրոլետարիատի պայքարն ընդդեմ շարունակվող պատերազմի, անարգանքի սյունին էին գամում միջազգային իմպերիալիզմին:

Մեկ այլ համարում «Կավկազսկի ռաբոչին» քննադատելով գերմանական պաշտպանողականների կենտրոնական օրգան «Ֆորվերթս» լրագիրը, գրում էր. «Բոլոր երկրներում քիչ չեն այնպիսի «սոցիալիստները», որոնք օգնում են իրենց բուրժուազիային՝ թոզ փչելու աշխատավոր մասսաների աչքերին..., և ահա այդ սոցիալիստ «հայրենասերները» ժողովրդի մեջ կեղծ գաղափարներ են տարածում պատերազմի հարցում և մահվան ու տաժանակրության են դատապարտում նրանց, ովքեր պայքարում են ընդդեմ պատերազմի»:

Անդրկովկասյան բոլշևիկյան պարբերականները, քննադատելով սոցիալ-պաշտպանողականներին, միաժամանակ իրենց դրվատանքի խոսքն էին հղում ինտերնացիոնալի գաղափարներին հավատարիմ մնացած և իմպերիալիստական պատերազմի դեմ մարտնչող, սոցիալիստական շարժման ակտիվ գործիչներին: Այս առումով հատկանշական են «Կավկազսկի ռաբոչիի»՝ «Ավստրո-գերմանական սոցիալ-դեմոկրատիան Ռուսաստանի քաղաքական մոմենտի մասին», «Լիբկնեխտի գործը», «Ինտերնացիոնալիստները», «Բակինսկի ռաբոչիի»՝ «Կարլ Լիբկնեխտի ազատումը» հոդվածները: Այս թերթերը, հակառակ միջազգային սոցիալիստական շարժման շահերին դավաճանած սոցիալ-պաշտպանողականների, օրինակ էին բերում Կ. Լիբկնեխտին, Կ. Ցետկինին և Ա. Բեբելին, որոնք, չնայած դաժան հետապնդումներին և հալածանքներին, հետևողականորեն շարունակում էին հանդես գալ իմպերիալիստական պատերազմի դեմ, քվեարկել ընդդեմ ռազմական վարկերի:

1917 թ. սեպտեմբերին Անդրկովկասում լայնորեն ծավալվել էր գործադուլային շարժումը: Իր կազմակերպվածությամբ, բնույթով և մասշտաբներով մի արտակարգ երևույթ էր Բաքվի բանվորների սեպտեմբերյան գործադուլը, որը գրավել էր ամբողջ Ռուսաստանի պրոլետարիատի ուշադրությունը: Անդրկովկասի բոլշևիկներն օգտագործում էին բոլոր լեգալ հնարավորությունները՝ հանդես գալու իմպերիալիստական պատերազմի դեմ: Այսպես, Թիֆլիսում սեպտեմբերի 4-ին կայացած քաղաքային դումայի ութերորդ նիստում իմպերիալիստական պատերազմի և բանակում մահապատիժ մտցնելու հրամանագրի դեմ հանդես եկավ Ֆ. Մախարաձեն: Այն հրապարակվեց «Կավկազսկի ռաբոչի» թերթում:

Սեպտեմբերի 14-ին Բաքվում հրավիրված փայտամշակողների արհմիության անդամների ընդհանուր ժողովը ընդունում է բոլշևիկյան բանաձև, որտեղ կոչ է արվում պատերազմից ծվատված երկրի փրկության համար անհապաղ հրապարակել գաղտնի պայմանագրերը և առաջարկել բոլոր պատերազմող երկրներին՝ կնքել ընդհանուր դեմոկրատական հաշտություն: Սեպտեմբերի 18-ին Բաքվի գործարանային և արհեստագործական հանձնաժողովների կոնֆերանսում հանգամանալից զեկուցումով հանդես եկան Պ. Ջնիը՝ ռուսերեն, Ս. Էֆենդիևը ադրբեջաներեն լեզուներով: Նրանք կոնֆերանսի պատգամավորներին առաջարկեցին ընդունել ՌՍԴԲ(բ)Կ Բաքվի կոմիտեի բանաձևը, որտեղ մասնավորապես նշվում էր, որ երկրի և հեղափոխության փրկության միակ ճանապարհը «... բոլոր պատերազմող և չեզոք երկրների ժողովուրդներին անհապաղ համընդհանուր հաշտություն առաջարկելն է»:

Պատերազմի և խաղաղության հարցերը լենինյան դիրքերից լուսաբանվեցին ՌՍԴԲ(բ)Կ Կովկասյան I երկրային համագումարում, որը տեղի ունեցավ 1917 թ. հոկտեմբերի 2—7-ը, Թիֆլիսում:

Համագումարը ներկայացնում էին Թիֆլիսի, Բաքվի, Ալեքսանդրապոլի, Ալավերդու, Կարսի, Բաթումի, Ելիզավետպոլի, Սարիղամիշի, Շուշիի, Տրապիզոնի, Հաղպատի և Կովկասի մյուս բոլշևիկյան կազմակերպությունները: Խորհրդակցական ձայնով համագումարի աշխատանքներին մասնակցում էին «Կավկազսկի ռաբոչի», «Բրձոլա», «Բանվորի կռիվը» թերթերի խմբագրական կոլեգիաների ներկայացուցիչները: Նրա բոլոր բանաձևերը և նյութերը տպագրվեցին այդ թերթերում: Համագումարում ընթացիկ մոմենտի մասին զեկուցումով հանդես եկավ Ստ. Շահումյանը: Նա, մերկացնելով էսէռներին ու մենշևիկներին, նշում էր, որ անհապաղ հաշտության համար պայքարելու փոխարեն, նրանք ոչ միայն չխզեցին կապը դաշնակից երկրների իմպերիալիստների հետ, այլև ամբողջապես ենթարկվեցին բուրժուազիայի քաղաքականությանը:

Ընթացիկ մոմենտի մասին համագումարի բանաձևում ասվում էր. «Համագումարը հաստատ վստահություն է հայտնում, որ պրոլետարիատին ու չքավոր գյուղացիությանը ներկայացնող սովետների կողմից իշխանության նվաճումը ազդանշան կծառայի համաշխարհային սոցիալիստական հեղափոխության համար, որը միակն է, որ կարող է դադարեցնել համաշխարհային սպանդը և ճանապարհ բացել մարդկության հետագա զարգացման համար»:

Այսպիսով, ՌՍԴԲ(բ)Կ Կովկասյան I երկրային համագումարը իմպերիալիստական պատերազմի դադարեցումը և դեմոկրատական հաշտության կնքումը կապում էր միայն սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հետ:

1917 թ. հոկտեմբերյան օրերին բոլշևիկյան կուսակցությունը ժողովրդական զանգվածներին նախապատրաստում էր վճռական գրոհի՝ տապալելու բուրժուական ժամանակավոր կառավարությունը, որը երկիրը կանգնեցրել էր ճգնաժամի առջև: Վ. Ի. Լենինը ՌՍԴԲ(բ)Կ Կենտկոմին հղած իր «Բոլշևիկները պետք է վերցնեն իշխանությունը», «Մարքսիզմը և ապստամբությունը», «Կողմնակի անձի խորհուրդները» նամակներում, «Ճգնաժամը հասունացել է» հոդվածում, հոկտեմբերի 10-ին և 16-ին կայացած Կենտկոմի պատմական նիստերում, հիմնավորելով պրոլետարական հեղափոխության անխուսափելիությունը, տվեց զինված ապստամբության կոնկրետ պլանը: Նա այդ օրերին, իմպերիալիստական պատերազմի ավարտն անմիջականորեն կապելով հեղափոխության շուտափույթ հաղթանակի հետ, միաժամանակ գտնում էր, որ սովետական իշխանության հաղթանակի և ամրապնդման կարևորագույն պայմաններից մեկը դեմոկրատական հաշտության կնքումն է: «Երկու մայրաքաղաքների բանվորների և զինվորների դեպուտատների սովետներում մեծամասնություն ստանալով,— գրում էր Վ. Ի. Լենինը,— բոլշևիկները կարող են և **պետք է** իրենց ձեռքը վերցնեն պետական իշխանությունը: Կարող են... որովհետև՝ իսկույն առաջարկելով դեմոկրատական հաշտություն... բոլշևիկները կկազմեն այնպիսի կառավարություն, որպիսին **ոչ ոք** չի տապալի» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 34, էջ 303): Իր պատմական նամակներում հիմնավորելով այն թեզը, որ սոցիալիստական հեղափոխության հաղթանակն ապահովված է նաև միջազգային առումով՝ Վ. Ի. Լենինը ջախջախիչ հարված հասցրեց զինված ապստամբության հակառակորդների և կապիտուլյանտների այն պնդմանը, թե հեղափոխության հաղթանակը և դեմոկրատական հաշտության առաջարկը Ռուսաստանի դեմ կհանեն նրա դաշնակիցներին, որոնք կմիավորվեն Ավստրո-գերմանական դաշինքի հետ: «Միջազգային դրությունը **հենց** այժմ, անգլիացիների և գերմանացիների սեպարատ հաշտության **նախօրյակին, մեր կողմըն** է: Հենց այժմ հաշտություն առաջարկել ժողովուրդներին՝ նշանակում է **հաղթել**» (նույն տեղը, էջ 305): Իսկ ինչ վերաբերում էր իսկական հեղափոխական պատերազմին, որը Ռուսաստանը ծայրահեղ դեպքում ստիպված կլիներ մղելու միջազգային իմպերիալիզմի դեմ, Վ. Ի. Լենինը նշում էր, որ հեղափոխական Ռուսաստանը դրա համար ուներ բավականաչափ թե՛ նյութական, թե՛ հոգևոր ռեսուրսներ:

Առաջնորդվելով լենինյան դրույթներով, ՌՍԴԲ(բ)Կ VI համագումարի, ՌՍԴԲ(բ)Կ կովկասյան I երկրային համագումարի որոշումներով՝ Հոկտեմբերի անմիջական նախապատրաստման ժամանակաշրջանում Անդրկովկասի բոլշևիկները և նրանց մամուլը պատերազմի ավարտն ու դեմոկրատական հաշտության կնքումը անմիջականորեն կապում էին հակահեղափոխական ժամանակավոր կառավարության տապալման և սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հետ: Այսպես, «Կավկազսկի ռաբոչին», անդրադառնալով պատերազմի ավարտի հարցին, նշում էր, որ «Դրան հասցնող միակ ճանապարհը հեղափոխական բանվորների և չքավոր գյուղացիների իշխանությունն է, որովհետև միայն այդ իշխանությունը կապված չի լինի դաշնակից երկրների կապիտալիստների հետ և հիմնավորապես շահագրգռված կլինի պատերազմի ավարտի հարցում»: Իսկ Շուշիի «Նեցուկ» թերթում Հ. Բեջանյանն (Հ. Կամարի) այն միտքն էր արտահայտում, որ միլիտարիզմը կարելի է տապալել իր սեփական ժողովրդի ձեռքով:

Սեպտեմբերի 29-ին Սարիղամիշում, քաղաքի տրանսպորտի և հրետանային պահեստի զինվորների համատեղ ժողովում, որին մասնակցում էին 200 մարդ, ընթացիկ մոմենտի մասին զեկուցումով հանդես եկավ Ս. Ալավերդյանը՝ նշելով, որ հեղափոխությունը փրկել և դեմոկրատական հաշտություն կնքել կարող է միայն բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների սովետը՝ իշխանությունն իր ձեռքը վերցնելով: Այդ զեկուցման նյութերը տպագրվեցին տեղի «Սոցիալ-դեմոկրատում»:

Պատերազմի ավարտը և դեմոկրատական հաշտության կնքումը հաղթական սոցիալիստական հեղափոխության հետ էին կապում նաև «Բանվորի կռիվը», «Բրձոլան» և բոլշևիկյան մամուլի մյուս օրգանները: Հատկապես տպավորիչ էր «Բանվորի կռվում» տպված Վահան Երեմյանի հոդվածը, որտեղ նա գրում էր. «Տնտեսապես ու ֆիզիկապես քայքայված ժողովուրդները տենչում են հաշտություն: Եվ նրանք արդեն ըմբռնում են, որ հաշտությունը—մշտնջենական խաղաղությունը ձեռք կարելի է բերել միայն... ոչնչացնելով իմպերիալիստական կառավարություններին» (Եղբայրացում, «Բանվորի կռիվը», 1917, 19 հոկտեմբերի): Մեկ այլ համարում «Բանվորի կռիվը» բացահայտորեն շեշտում էր. «Ով ձգտում է խաղաղության, նա պետք է ձգտի նաև մեր դեմոկրատիայի իշխանության հաստատման: Այս է միակ ճանապարհը դեպի դեմոկրատիկ խաղաղություն»:

Այսպիսով, սոցիալիստական հեղափոխության անմիջական նախապատրաստման ժամանակաշրջանում Անդրկովկասի բոլշևիկյան պարբերական մամուլը դեմոկրատական հաշտության համար մղված պայքարում ծավալում էր ամենալայն պրոպագանդիստական և ագիտացիոն գործունեություն՝ մերկացնելով բուրժուազիայի, էսէռամենշևիկյան և բուրժուազգայնական կուսակցությունների ռեակցիոն, հակաժողովրդական քաղաքականությունը: Միաժամանակ, զինված ՌՍԴԲ(բ)Կ VI, Կովկասյան I համագումարների որոշումներով, լենինյան տակտիկական լոզունգներով, այն երկրամասի աշխատավորությանը կազմակերպում և նախապատրաստում էր հեղափոխական նոր մարտերի՝ իմպերիալիստական պատերազմի ավարտը անմիջականորեն կապելով բուրժուազիայի դիկտատուրայի տապալման, սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հետ:

Բույսերի անհող աճեցման հնարավորությունն ու բարձր արդյունավետությունը պարզելուց հետո ինստիտուտի հետազոտությունները ուղղվեցին բանջարաբոստանային կուլտուրաների համեմատությամբ ավելի արժեքավոր ու թանկարժեք եթերայուղային բույսերի, ներկաբույսերի, դեղաբույսերի և զարդաբույսերի արտադրությանը, որը, մեր կարծիքով, անհող աճեցման տեսակետից ավելի հեռանկարային է:

Ըստ բույսերի անհող աճեցման միջազգային ընկերության (Հոլանդիա) գլխավոր քարտուղարի հրապարակած տեղեկությունների, տվյալ բնագավառում հիմնարար գիտական մշակումները տարվում են երեք կենտրոններում՝ Անգլիայում, Հոլանդիայում և Հայաստանում: Ընդ որում, մի շարք արժեքավոր տեխնիկական (եթերայուղային, դեղաբույսերի, ներկաբույսերի և այլն) կուլտուրաների անհող աճեցման ֆիզիոլոգիական-ագրոքիմիական, կենսաքիմիական հիմունքների հետազոտությունները տարվում են միայն Հայաստանում: Այս ուղղությամբ ընթացող ակտիվ որոնումների արդյունքը հանդիսացան ինստիտուտում մշակված և նրա գիտաարդյունաբերական բազայում կիսաարտադրական փորձարկումներ անցած ավելի քան 20 եթերայուղային կուլտուրաների, դեղաբույսերի և ներկաբույսերի անհող արտադրության տեխնոլոգիաները: Անվիճելի նվաճումների շարքում պետք է դասել ինստիտուտում մշակված բույսերի անհող աճեցման նոր մեթոդը՝ ջրելու ու սնուցելու շիթային եղանակը, որը նույնպես անցել է կիսաարտադրական փորձարկումները: Հաշվարկները ցույց են տալիս, որ նման հիդրոպոնիկումի ստեղծման համար 5—6 անգամ պակաս ծախսեր են պահանջվում, քան ներկայումս գոյություն ունեցող ավանդական երկաթբետոնե փորձատեղամասերով հիդրոպոնիկումների համար:

Գիտական հետազոտությունների արագացման և արդյունավետ արդյունքների ստացման գործում դրական դեր է ունեցել ինստիտուտում կիրառվող ժամանակավոր աշխատանքային կոլեկտիվների կազմակերպման պրակտիկան, որոնց կազմն ու թվաքանակը որոշվում է՝ ելնելով առաջադրվող խնդիրներից: Գիտական մտքի այդօրինակ կենտրոնացումը, ժամանակավոր կոլեկտիվների կազմի մեջ մտնող մասնագետների բազմազանությունը նպաստում են առաջնահերթ պրոբլեմների բազմակողմանի, արագ և ամբողջական լուծմանը: Սակայն գոհացուցիչ չի կարելի համարել կենսատեխնոլոգիաների ներդրման գործի դրվածքը:

Ներկայումս նախապատրաստական աշխատանքներ են տարվում Հոկտեմբերյանի շրջանում 10 հեկտար տարածությամբ բացօթյա հիդրոպոնիկումի կառուցման ուղղությամբ՝ արժեքավոր եթերատու բույսի՝ վարդագույն խորդենու աճեցման համար: Այստեղ կառուցվում է 0,6 հեկտար տարածությամբ հիդրոպոնիկական ջերմոց՝ բանջարեղենի աճեցման համար: Քայլեր են ձեռնարկվել Իջևանի շրջանում սանդղափուլավոր լանջերի յուրացման ուղղությամբ՝ տեխնիկական կուլտուրաների աճեցման բացօթյա հիդրոպոնիկումներ ստեղծելու նպատակով:

Կոնկրետ խնդիրների լուծմանը զուգընթաց ինստիտուտի կոլեկտիվը լայն քննարկումից հետո ճշտել և մշակել է հեռանկարային հիմնարար հետազոտությունների գլխավոր ուղղությունները:

Մոլորակի ազգաբնակչության բուռն աճը, ցանքատարածությունների անընդհատ կրճատումը, գյուղատնտեսության ոչ ռացիոնալ վարումը հանգեցրել են արտաքին միջավայրի կառավարման պայմաններում գյուղատնտեսական ապրանքների արտադրության նոր, ինտենսիվ արդյունաբերական մեթոդների որոնման անհրաժեշտությանը: Այդ խնդրի լուծման ամենաարդյունավետ ուղիներից մեկը մի շարք բույսերի անհող աճեցման հետագա զարգացումն է, այն իրականացնելու նոր մեթոդների որոնումը:

Հետազոտությունների մյուս ուղղությունը ռադիոէկոլոգիան է, որի հրատապությունը, անտրոպոգեն ներգործության հետևանքով արհեստական և բնական ռադիոնուկլիդներով կենսոլորտի աճող աղտոտման պայմաններում, կասկած չի հարուցում: Բացի այդ, բնապահպանական և առողջապահական մեծ նշանակություն ունեն կենսոլորտում ծանր բնական ռադիոակտիվ տարրերի միգրացիայի ու ֆիզիոլոգիական դերի հետազոտությունը, բնության մեջ դրանց կուտակման մակարդակի ուսումնասիրությունը:

Վերակառուցման պայմաններում ինստիտուտի կոլեկտիվի առջև դրված գիտական խնդիրների լուծումը հնարավորություն կտա ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, գյուղատնտեսությունը փոխադրելու նոր տեխնոլոգիական մակարդակի վրա, լայն հեռանկարներ կբացի հանրապետության վերամշակող արդյունաբերության առջև:

---

## Գաղափարախոսական պայքարի ճակատներում

# ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԻՆՖՈՐՄԱՑԻԱՅԻ ՄԻՋՈՑՆԵՐԸ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ԱՐԴԻ ՊԱՅՔԱՐՈՒՄ

**Լ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ**

ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ, սահմանելով երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման և սովետական հասարակության որակական նոր վիճակի հասնելու գիտականորեն հիմնավորված ստրատեգիան, նշեց նրա կենսագործունեության բոլոր՝ տնտեսական, քաղաքական ու հոգևոր ոլորտների վերակառուցման անհրաժեշտությունը: «Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը մեր բոլոր՝ մոտակա ու հեռանկարային, տնտեսական ու սոցիալական, քաղաքական ու գաղափարախոսական, ներքին ու արտաքին պրոբլեմների բանալին է»,— նշեց Մ. Ս. Գորբաչովը կուսակցության համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած Քաղաքական զեկուցման մեջ:

Կուսակցության համագումարի առաջադրած խնդիրների իրականացումն առաջին պլան է մղում մարդկային գործոնի՝ «բոլոր փոփոխությունների վճռորոշ գործոնի» ակտիվացման անհրաժեշտությունը, որը, իր հերթին, ենթադրում է լճացման երևույթների ու միտումների դեմ, հասարակական կյանքի բոլոր ոլորտների դեմոկրատացման, խոսքի և գործի միջև խզման հաղթահարման համար մղվող պայքարում պրոպագանդիստական աշխատանքի վերակառուցում: Վերջին տարիների կուսակցական փաստաթղթերում բացահայտվել ու վերլուծվել են էկոնոմիկայում և հասարակական կյանքում տեղ գտած լճացման երևույթների պատճառները: ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան (1987 թ.) պլենումը նշեց, որ «այդ արգելակման արմատները սոցիալիստական դեմոկրատիայի հաստատությունների գործունեության լուրջ թերությունների մեջ էին, հնացած, իսկ երբեմն էլ իրողություններին չհամապատասխանող քաղաքական և տեսական դիրքորոշումների, կառավարման պահպանողական մեխանիզմի մեջ»:

Երկրի զարգացման պրոցեսում անբարենպաստ միտումներն ու դժվարությունները, հրապարակայնության բացակայությունը, հասարակականորեն կարևոր ինֆորմացիայի պակասը, «կիսաճշմարտությունը», «քննադատությունից զերծ գոտիների առկայությունը» պրոպագանդիստական աշխատանքում լուրջ խոչընդոտներ էին առաջացրել, քանի որ հասարակության տարբեր խավերում սկսել էին նկատվել նահանջ դեպի սոցիալական պասիվություն, իրենց կենսական շահերը ներկայացնող հարցերի լուծմանը մասնակցելուց մարդկանց հեռացում:

Սխալ, դոգմատիկ կոնցեպցիաների վրա հիմնված տեսական ու քաղաքական դրույթները դառնում էին հասարակական գիտակցության սեփականություն առաջին հերթին մասսայական-ինֆորմացիոն ազդեցության գործիքի միջոցով, ինչը և նպաստում էր «անվստահության» որոշակի ֆոնի ստեղծմանը ինչպես ռեալ իրականությունից կտրված հաղորդումների, այնպես էլ դրանց տարածման ուղիների նկատմամբ: Նման իրավիճակում դժվարություններ էին ծագում մասսայական հայացքների տարածման գործում, որովհետև սոցիալական հաստատություններից եկող ին-

ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ ԼԵՎՈՆ ԲԱՂԴԱՍԱՐԻ— «Լենինյան ուղիով» ամսագրի գլխավոր խմբագրի տեղակալ., խմբագրական կոլեգիայի անդամ, բանասիրական գիտությունների թեկնածու:

դէնցները ու երևույթները, տնտեսական ու սոցիալական պրոցեսները, ակտիվորեն պաշտպանեն ամենայն նորը, առաջավորը, բարձրացնեն հրատապ, մարդկանց հուզող պրոբլեմներ և առաջարկեն դրանց լուծման ուղիներ», հանգեցնում է սեփական պրոպագանդայի հաջողության ապահովմանը և փաստորեն վերացնում է թշնամական ազդեցությունների պրոբլեմը: Լայն իրազեկվածությունն ու մարդկային գործոնի ակտիվացումը իմպերիալիստական պրոպագանդայի ճանապարհին դառնում են հուսալի պատնեշ:

ԱՄՆ-ի մասսայական ինֆորմացիայի առաջատար միջոցների ղեկավարների հետ ունեցած զրույցի ժամանակ Մ. Ս. Գորբաչովը ներկայացրեց հակապրոպագանդայի ըստ էության նոր կոնցեպցիա, որը հիմնված է հրապարակայնության, դիսկուսիաների, բուրժուական քաղաքագետների և ժուռնալիստների կարծիքներն ամբողջությամբ մեր մամուլով լայնորեն ներկայացնելու վրա, բերեց ապակողմնորոշիչ ինֆորմացիայի, ռադիոձայների ՍՍՀՄ ուղղված հաղորդումներում զանազան ասեկոսեներ ու բամբասանքներ օգտագործելու կոնկրետ փաստեր: Նա մասնավորապես ընդգծեց. «Մենք չենք վախենում քննադատությունից: Ձեր քննադատությունը հաճախ կրում է անհամոզիչ բնույթ, այն հարգանքով չի վերաբերվում մեր ժողովրդին, ուստի և հարգանք չի հարուցում»: Եթե, ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարը, Արևմուտքի մասսայական ինֆորմացիայի միջոցները փորձում են Սովետական Միությունը ներկայացնել վատ լույսով, նշանակում է մենք լավ գործ ենք սկսել, սկսել ենք ավելի մեծ գործեր լուծել վերակառուցման ընթացքում: Եվ քանի որ փորձում են թուլացնել հետաքրքրությունը մեր քաղաքականության նկատմամբ, ուրեմն վերակառուցումը լուրջ գործ է թե մեզ համար և թե աշխարհի համար:

Սովետական հասարակությունում կատարվող փոփոխությունները օբյեկտիվորեն բարենպաստ պայմաններ են ստեղծում հակապրոպագանդիստական գործունեության ծավալման, նրա հարձակողականության և արդյունավետության բարձրացման համար: Դա հասկանալի է, քանզի թշնամական պրոպագանդայի դեմ մղվող պայքարը կարող է արդյունավետ լինել, եթե այն խարսխված է սոցիալ-տնտեսական և քաղաքական ամուր հենարանի վրա:

---



# ՀԱՅԱՑՔԸ ԱՊԱԳԱՅԻՆ

**Ա. ՍԱՔԱՆՅԱՆ**

## ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՂԵԿԻ ՄՈՏ

Սուրեն Գասպարյանի աշխատանքային կենսագրության մեկ տասնամյակը տակավին չի բոլորել, բայց արդեն փորձառու տնտեսավարի և հմուտ կազմակերպչի բարի համբավ է ձեռք բերել: Նա այն սակավաթիվ երջանիկներից է, որոնց մասին դրական են արտահայտվում և՛ ղեկավարները, և՛ ենթակաները: Գյուղ տանող ճանապարհին հենց այնպես, ի միջի այլոց, «խոսք քաշեցի» կոլտնտեսության արհկոմի նախագահ Ա. Մովսիսյանից իրենց նախագահի մասին: Նրա կարծիքը կարելի է մոտավորապես ամփոփել այսպես. «Շատ խստապահանջ է: Երբ նախագահ ընտրվեց, իսկույն կարգուկանոն սահմանեց, այսինքն՝ եթե աշխատանքում բարեխիղճ ես, հոգատար ես հանրայինի բարիքի հանդեպ, աչքիս լույսն ես, եթե ո՛չ, ապա կարող ես թողնել ասպարեզը: Եվ հենց այդ պահանջկոտության համար էլ կոլտնտեսականները հարգում ու սիրում են նրան, այդ հարգանք-սիրուց ծնվում է ինչ-որ ակնածանք նրա անձի նկատմամբ...»:

Եվ հետո, երբ առիթ եղավ խոսել կոլտնտեսականների հետ, այդ կարծիքը շատերը բաժանեցին: Կենսաթոշակառու Զ. Վարդանյանը, օրինակ, նախագահին բնութագրեց այսպես. «Աշխատասեր ու հարգալից է, մարդավայել է վերաբերվում թե՛ մեծին, թե՛ փոքրին, մեկնումեկը ինչ-որ հարցով գնա մոտը, կձգտի ընդառաջել: Նախագահը, եթե ժողովրդի հետ լեզու չգտավ, չի կարող աշխատել: Գյուղի պայմաններում ղեկավարը պետք է լավ հասկանա աշխատավոր մարդուն, կարեկից լինի նրան, մեր նախագահը այդպիսին է...»:

... Սուրեն Գասպարյանը Ստեփանավանի սովխոզ-տեխնիկումի շրջանավարտ էր, երբ զորակոչվեց սովետական բանակ: Երեք տարի ծառայեց Բալթիկայի ռազմածովային նավատորմում, կոփվեց: Ապա ընդունվեց ու հաջողությամբ ավարտեց Լատվիայի գյուղատնտեսական ակադեմիան: Գիտնական-գյուղատնտեսի դիպլոմով աշխատանքի նշանակվեց Ռեզեկնեի շրջանի արտադրական վարչությունում՝ որպես գլխավոր գյուղատնտես, հետո վստահեցին Մակոնկասի խոշոր պետական բազմաճյուղ տնտեսության ղեկավարումը: Այն, բնականաբար, նրա համար լավ դպրոց դարձավ: Շատ բան սովորեց այստեղ երեք տարվա ընթացքում, հասու եղավ արտադրության կառավարման, մարդկանց հետ աշխատելու շատ գաղտնիքների:

Մակոնկասում գործերը բարեհաջող էին, բայց, այդուհանդերձ, Հայաստանը ձգում էր: Հոկտեմբերյանի շրջանի Նոր Արմավիր գյուղի ծնունդ է, կամենում էր հայրենի օրրանին, ծնողներին, հարազատներին մոտիկ լինել: Եվ կուսակցության Հոկտեմբերյանի շրջկոմում անսացին նրա խնդրանքին ու առաջարկեցին ստանձնել Սովետական գյուղի Կալինինի անվան կոլտնտեսության նախագահի պաշտոնը:

— Համերկրացի է, երիտասարդ, տնտեսություն վարելու փորձ ու հմտություն ունի, և, ամենակարևորը, աշխատանքային եռանդով առլեցուն է,— մոտավորապես այսպես ներկայացրեց նրան ՀԿԿ Հոկտեմբերյանի շրջկոմի առաջին քարտուղար Ս. Վարդանյանը կոլտնտեսության ժողովի մասնակիցներին:

Եվ ժողովականները, ծանրութեթև անելով այդ բնութագիրը, թեկնածուի արժանիքները, իրենց ձայնը տվեցին Ս. Գաս-

պարյանի օգտին, նրան վստահեցին կոլտնտեսության ղեկը:

Դա 1985-ի օգոստոսին էր, այն օրերին, երբ ողջ երկիրը, աշխատավորական կոլեկտիվները ապրում էին ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի բարերար ազդեցության ներքո, վերագնահատում իրենց արածը, որոշում անելիքները նոր պահանջներին համապատասխան:

Եվ կոլտնտեսության նորընտիր նախագահի գործունեության մեկնարկը համընկավ վերակառուցման ու արագացման կուրսից բխող խնդիրների լուծմանը: Հարկ էր վերակառուցել ու կատարելագործել աշխատանքի ոճը, օգնել մարդկանց՝ արագացնելու էկոնոմիկայի զարգացումը, բարձրացնելու հանրային արտադրության արդյունավետությունը, լուծելու սոցիալական բնույթի շատ հարցեր: Այդ խնդիրների շուրջն էլ խորհում էր երիտասարդ նախագահը: «Ինչի՞ց և ինչպե՞ս սկսել»: Եվ նա տքնաջանորեն ուսումնասիրում էր կոլտնտեսության էկոնոմիկան, արտադրական ճյուղերի վիճակը, խորամուխ լինում նրա զարգացման ռեզերվների ու հնարավորությունների մեջ, ուշի-ուշով, ամենայն համբերատարությամբ հետևում տեղամասերի ղեկավարների, մասնագետների գործունեությանը՝ ով ինչով է շնչում, դրսևորում իրեն, որքանով է համապատասխանում իրեն վստահված պաշտոնին, ինչպիսի շահագրգռությամբ է վերաբերվում հանրային արտադրությանը, ունեցվածքին... Ու նրա մոտ կամաց-կամաց հստականում էին պատկերացումները ղեկավարների ու մասնագետների կարողության, գործունեության ոճի, նրանց ղեկավարած ճյուղերի վիճակի մասին:

Եվ նախագահը վերակառուցման գործն սկսեց կադրերից: Բանն այն է, որ տընտեսության առանձին կադրեր տարիներ շարունակ իրենց վստահված տեղամասերը ղեկավարել են մի կերպ, ինչպես ասում են՝ իներցիայի ուժով: Ոմանք նույնիսկ չունեին տվյալ տեղամասին համապատասխան մասնագիտություն: Կային նաև տարեցներ, որոնց համար դժվար էր ընթանալ նոր պահանջներին համաքայլ: Կադրերի տեղաշարժի առնչությամբ նախագահը լուրջ, գործարար խոսակցություն ունեցավ կուսբյուրոյի քարտուղարի հետ: Երկուսն էլ գիտակցում էին դրա անհրաժեշտությունը: Բայց ինչպե՞ս անել, որ դժգոհություններ չլինեն, մարդիկ ճիշտ հասկանան ու հոժարակամ զիջեն իրենց տեղը: Որոշեցին հարկադրական քայլի չդիմել, ընտրել համոզման մեթոդը:

Մարդիկ հասկացան: Եվ ահա, հանգիստ պայմաններում, գործարար մթնոլորտում կատարվեցին կադրային փոփոխություններ. ասպարեզ եկան բանիմաց, երիտասարդ մասնագետներ: Մոտեցումն օբյեկտիվ էր, սկզբունքային: Դրա համար էլ դժգոհողներ չեղան, դեռ ավելին՝ մարդիկ սկսեցին համակրանքով ու ակնածանքով վերաբերվել նախագահին, ոգևորվել նրա մտահղացումներով ու ձեռնարկումներով, նեցուկ լինել նրան դրանց իրականացման գործում:

## ԱՐԱԳԱՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

Արագացման կուրսի կարևոր պահանջներից մեկը աշխատանքի արդյունավետության բարձրացումն է, աշխատատար պրոցեսների մեքենայացումը, ձեռքի ծանր աշխատանքի վերացումը: Այդ պահանջը կոլտնտեսության վարչության, կուսկազմակերպության մշտական ուշադրության կենտրոնում է: Հենց թեկուզ կովերի կթի մեքենայացումը: Ասել, թե այստեղ այդ մասին չեն մտածել, ճիշտ չի լինի: Մտածել են, նույնիսկ ձեռք են բերել կթի ագրեգատներ, սակայն դրանք չեն տեղադրել. ագրեգատները փչացել ու դուրս են գրվել:

Անշուշտ, փորձառու նախագահը չէր կարող հաշտվել կովերի կթի պապենական եղանակի հետ: Մանավանդ որ կանայք դժկամությամբ էին աշխատում, երիտասարդ աղջիկները հրաժարվում էին գնալ ֆերմա: Եվ Ս. Գասպարյանը շուտով սկսեց զբաղվել կթի մեքենայացման հարցով. շատ դռներ բախեց, շատերի հետ խոսեց: Արդեն 1985-ի վերջերին կթի ագրեգատները տեղադրվել էին: Կթվորուհիների գործը հեշտ ու հաճելի դարձավ: Հիմա կթվորի պակասի կամ հոսունության պրոբլեմ չկա, կանայք հոժարակամ են գնում այդ գործին: Անցյալ տարի կաթի արտապլանային համախառն արտադրանքը կազմել է 16,5 տոննա: Տնտեսությունը կաթի որակի համար վերջին երկու տարում ստացել է 7.727 ռուբլի հավելավճար:

Տնտեսությունն ամեն տարի ցանում է մոտ 50 հեկտար եգիպտացորեն ու կարտոֆիլ: Ծանր աշխատանք էր ձեռքով քաղհանը. սեզոնի ընթացքում երկու-երեք անգամ 60 մարդ բարկ արևի տակ, գլխահակ ոչնչացնում էին մոլախոտերը: Եվ ամեն անգամ այդ գործը տևում էր երկու-երեք օր: Մի օր էլ նախագահը խորհրդի նստեց մասնագետների ու մեխանիզատորների հետ՝ ինչու՞ չմեքենայացնել քաղհանի գործը: Եվ 1986-ին ծնունդ առավ նորույթը. տեղի ուժերով պատրաստվեցին տրակտորաքարշ հատուկ փոցխեր, և եգիպտացորենի ու կարտոֆիլի ցանքերի քաղհանի աշխատանքը մեքենայացվեց: Այժմ արդեն մեկ մեխանիզատորը երկու օրում ավարտում է այդ նույն 50 հեկտարի մոլախոտազերծումը: Այսպիսով, մարդիկ ազատվում են ձեռքի ծանր աշխատանքից, խնայվում են միջոցներն ու ժամանակը, բույսերի աճի համար ստեղծվում են առավել նպաստավոր պայմաններ: Այստեղից էլ՝ բերքի աճը...

Դաշտում խոտը ավտոմեքենաներին բարձելը դյուրին գործ չէր: Կորուստներն էլ զգալի էին: Որոշվեց ներդնել խոտի մեքենայական հակավորումն ու բարձումը փոխադրամիջոցներին: Մամլող-հակավորող մեքենան ձեռք բերվեց, իսկ բարձողը պատրաստվեց տեղի ուժերով: Այդ նորույթի շնորհիվ զգալիորեն բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, կանխվեցին փչացումներն ու կորուստները: Եթե նախկինում 10 հեկտարանոց դաշտում խոտը ձեռքով բարձելու համար հարկավոր էր 20 բանվորական ուժ, ապա այժմ երկու հոգով հեշտ ու հանգիստ անում են այդ նույն գործը:

Եվ մյուս կարևոր հանգամանքը՝ արտադրության զարգացման ռեզերվների ու հնարավորությունների արդյունավետ օգտագործումը: Տնտեսության հողային ռեսուրսները սահմանափակ են, ընդամենը 280 հեկտար, որից 160-ը վարելահող է, 70-ը՝ խաղողի, 50-ը՝ պտղատու այգի: Հետևաբար, հարկ է թանկ գնահատել ամեն մի թիզ հողը, ամեն մի հեկտարից անհրաժեշտ հատույց ապահովել: Եվ այստեղ ամեն տարի հողատարածությունը «ընդարձակում» են 40 հեկտարով՝ ամռանը 30 հեկտար եգիպտացորենի խոզանացան կատարելու, աշնանը՝ 10 հեկտար ռապս ցանելու միջոցով: Գարնանը ռապսի տեղը զբաղեցնում է այլ կուլտուրա: Երկրորդ ցանքը լավ արդյունք է տալիս. կուտակվում է շատ արժեքավոր հյութալի կեր:

Տնտեսությունում կովերի կերակրումը շուրջ տարին կազմակերպվում է ստացիոնար-մսուրային եղանակով: Մինչև 1985-ը օրական ութ, իսկ ողջ ամռան ընթացքում 500 տոննա կանաչ կեր էին ձեռք բերում շրջանի տնտեսություններից, չխոսելով արդեն գնովի խտացրած կերերի մասին: Նախագահը հարցը կոնկրետ դրեց. ինչու՞ չստեղծել սեփական կերի կայուն բազա: Բայց ի՞նչ ճանապարհով: Հիմնական ուղին համարվեց առվույտի ցանքադաշտերի բերքատվության բարձրացումը՝ մշակության առաջավոր տեխնոլոգիաների ներդրման միջոցով:

Առվույտն այստեղ տարեկան չորս անգամ հնձում են: Լավ մշակության ու խնամքի շնորհիվ, օրինակ, անցած տարվա խիստ ցրտահարության պայմաններում նույնիսկ նախորդ հինգ տարիների միջինից ավելի բերք ստացվեց. պատրաստվեց 250 տոննա սենաժ, հավաքվեց 700 տոննա կանաչ զանգված և կուտակվեց 278 տոննա չոր խոտ: Արդեն 1986-ից սկսած տնտեսությունը ոչ մի գրամ ինչպես հյութալի, այնպես էլ չոր կեր չի գնում, դեռ ավելին՝ ինքն է վաճառում այլ տնտեսությունների: 1985-ի համեմատությամբ 100 տոննայով էլ պակասել է պետությունից խտացրած կերի գնումը:

Տարօրինակ է, բայց Սովետականի կոլտնտեսությունում ընդունված չէր օրգանական պարարտանյութեր օգտագործելը: Գոմաղբը պարզապես լցնում էին առուն ու, բառիս բուն իմաստով, ջրի բերանը տալիս: Նախագահի նախաձեռնությամբ գոմաղբի համար առանձնացվեց հատուկ տեղ, որտեղ այն կուտակվում, ապա փոխադրվում է դաշտերը: Ավելորդ է նույնիսկ ասել, թե ինչպիսի արդյունք է ստացվում օրգանական պարարտանյութերի կիրառումից:

Եվ այսպես, Սովետականի կոլտնտեսությունում լավ բարեկամություն են անում հողի հետ, պարտադրում նրան, որ իրենց գործադրած ջանքերին համապատասխան հատույց տա...

## ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆ

Անցած տարին անբարենպաստ էր Արարատյան դաշտի տնտեսությունների համար: Բնությունը քմահաճ խաղ խաղաց. գարնան ցրտահարությունը մեծ վնաս պատճառեց անխտիր գյուղատնտեսական բոլոր կուլտուրաներին: Մարդկանց տքնաջան աշխատանքը, ինչպես ասում են, հողին էր հավասարվել նաև Սովետականի կոլտնտեսությունում: Խիստ տուժել էին խաղողի ու պտղատու այգիները, կերաբույսերը, խորդենու պլանտացիան: Հարկ էր նվազեցնել բնության արհավիրքի պատճառած վնասը: Այսօր նա-

խագահն անսքող գոհունակությամբ է խոսում այդ գործում կոլտնտեսության վարչության և կուսբյուրոյի համագործակցության մասին: Եվ առհասարակ ամեն մի փոքր ու մեծ գործ ձեռնարկելիս նա ապավինում է կուսկազմակերպության, կոմունիստների աջակցությանը:

Նախնական հետազոտությունները ցույց տվեցին, որ խաղողի այգիները կարելի է ինչ-որ չափով վերականգնել: Իսկ խաղողագործությունը տնտեսության առաջատար ճյուղն է: Դրանից է գոյանում դրամական եկամուտների 50 տոկոսը: Շուտով խաղողի այգիների ցրտահարության հետևանքների վերացման հարցը գործարար մթնոլորտում քննարկվեց կուսբյուրոյի և կոլտնտեսության վարչության համատեղ նիստում: Համապատասխան հանձնարարություններ ստացան բրիգադավարներն ու մասնագետները, ստեղծվեց հատուկ հանձնաժողով՝ կուսբյուրոյի քարտուղար Սուրեն Հովհաննիսյանի գլխավորությամբ: Հանձնաժողովի առջև խնդիր դրվեց՝ մշտական, ամենօրյա հսկողություն սահմանել մշակված լրացուցիչ միջոցառումների իրականացման վրա: Հարկ եղավ նորից էտել վազերը, սնուցել ու բուժել: Հիվանդությունները հայտնաբերելու և կանխելու նպատակով հանձնաժողովը պարտադիր կերպով շաբաթական մեկ անգամ ստուգում էր այգիների վիճակը: Ստուգումներից մեկի ժամանակ պարզվեց, որ առանձին այգեհատվածներում միդիում հիվանդությունը գլուխ է բարձրացրել, որի պատճառը բրիգադավարների ու մասնագետների անուշադիր վերաբերմունքն է: Հարցը քննարկվեց կուսբյուրոյի նիստում, որտեղ նրանք խիստ հանդիմանության արժանացան: Բրիգադավարների ու մասնագետների համար նիստը լուրջ դաս եղավ: Ի պատիվ նրանց, պիտի ասել, որ ճիշտ, անհրաժեշտ հետևություններ արեցին քննադատությունից:

Հետևողական, բարեխիղճ աշխատանքի արդյունքն ակներև էր. հիվանդությունը վերացվեց, վազերը պտղավորվեցին: Եվ եթե շրջանը խաղողի արտադրության տարեկան պլանը կատարեց ընդամենը 42 տոկոսով, ապա Սովետականի կոլտնտեսությունը 83 տոկոս կատարողական ցույց տվեց՝ հեկտարից ապահովելով 110,7 ցենտներ բերք: Տնտեսության մարդկանց համար դա ամենից առաջ բարոյական հաղթանակ էր, նրանք ապացուցեցին, որ չեն ընկրկի դժվարությունների առջև, հարկ եղած դեպքում կհաղթահարեն դրանք:

ՍՄԿԿ XXVII համագումարը, հետհամագումարյան պլենումները ըստ ամենայնի կարևորել են սկզբնական կուսկազմակերպությունների դերը վերակառուցման ու արագացման կուրսի իրականացման գործում: Եվ Սովետականի կոմունիստները միշտ էլ գտնվել են իրենց կոչման բարձրության վրա: Հանրային արտադրության զարգացման, վերակառուցման կուրսից բխող խնդիրները քննարկման առարկա են դառնում ժողովներում և բյուրոյի նիստերում: Այդ քննարկումները նպաստում են ֆերմաներում և բրիգադներում գործերի վիճակի բարելավմանը, մարդկանց պատասխանատվության բարձրացմանը, աշխատանքային և կատարողական կարգապահության ամրապնդմանը:

Բերքահավաքի եռուն օրերին կուսբյուրոն մեծ ակտիվություն է դրսևորում: Ողջ սեզոնի ընթացքում բյուրոյի անդամներն ու շատ կոմունիստներ ներգրավվում են շուրջօրյա հերթապահության մեջ, մշտական հսկողություն սահմանում բերքահավաքի ընթացքի և բերքի անկորուստ հավաքման վրա:

Հանրային արտադրությանը կոմունիստների գործնական, ակտիվ մասնակցությունը այն նեցուկն է, որի վրա հենվում են կոլտնտեսության վարչությունը, նրա երիտասարդ նախագահը: Այստեղ գովեստով են խոսում շատերի մասին: Սակայն կան կոմունիստներ, որոնք պարզապես առանձնանում են իրենց հայրենանվեր, քրտնաջան աշխատանքով: Զ. Վարդանյանը շատերից մեկն է: Կենսաթոշակի է անցել, որ հանգիստը վայելի, բայց հանգիստը դարձյալ տեսնում է աշխատանքում, գործի մեջ: Առույգ, կենսախինդ այր է, շուրջտարին ակտիվորեն մասնակցում է այգիների ու ցանքերի մշակությանը և բերքահավաքին, լավ օրինակ ծառայում ջահելներին...

Վաղարշակ Մովսիսյանը առաջավոր մեխանիզատոր է, երեք տասնամյակից ավելի տրակտորի ղեկին: Ցանքի ու մշակության մեքենայական բոլոր աշխատանքները վստահված են նրան: Եվ մազերին եղյամ իջած այս մարդը ամեն գործ կատարում է ճիշտ ժամանակին, բարձր որակով: Նրան հավատում ու գնահատում են:

Երեք տասնամյակ հողի հետ բարեկամություն է անում Դմիտրի Հովհաննիսյա-



նը: Գարունը բացվում է, նա այգիներում է օրն անցկացնում: Այնտեղից տրակտորն ու կցվող մեքենաները հանում է ուշ աշնանը: Ծառերի ու վազերի բուժման ու միջշարային տարածությունների մշակության գործերը նա է կատարում: Իսկ որտեղ մեխանիզատոր Դմիտրին՝ այնտեղ բարձր արտադրողականություն, այնտեղ բարձր որակ ու առատ բերք:

Մարիետա Գրիգորյանի մասին քարտուղարն ասում է.

— Մարիետան կոմունիստի ավանգարդային դերն ապահովում է և՛ արտադրական, և՛ հասարակական աշխատանքում: Նրա կապալային օղակը կոլտնտեսության ամենաառաջավոր և ամենաշահութաբեր կոլեկտիվն է, որը խաղող ու պտուղ է աճեցնում, բանջարաբոստանային կուլտուրաներ մշակում և ամեն տարի բարձր բերք ապահովում: Օղակի անդամները անցած տարի վաստակած ամեն մի ռուբլու հաշվով 50 կոպեկ հավելավճար են ստացել:

Շատ են առաջավոր կոմունիստները, բոլորին չես թվարկի: Բայց կան հատկանիշներ, որոնք բնորոշ են գրեթե բոլորին՝ բարեխղճություն, պարտաճանաչություն, գիտակցական կարգապահության բարձր զգացում, խոսքի ու գործի միասնություն և այլն: Այլ խոսքով, նրանք կոմունիստի վեհ կոչմանն արժանի մարդիկ են...

## ՆՈՐԸ ԱՐՄԱՏՆԵՐ Է ՁԳՈՒՄ

Կոլտնտեսության նախագահ Սուրեն Գասպարյանը նորի ջատագով է, արմատավորող: Եվ այդ գործում կուսկազմակերպությունը, նրա բյուրոն զորավիգ են դառնում, օգնում՝ իրագործելու լավ ու համարձակ մտահղացումը: Միության առաջավոր տնտեսություններում լավ քննություն բռնած կապալային աշխատանքը նորույթ էր Հոկտեմբերյանի շրջանում: Որոշ տնտեսություններում համարձակորեն, որոշ տնտեսություններում՝ տարակուսանքով էին ներդնում այն:

Սովետականում լրջորեն ծանրութեթև արեցին և գտան, որ հնարավոր է այդ եղանակին անցնել: Սակայն հարկ էր նախապես բացատրական աշխատանք տանել արտադրության մարդկանց շրջանում, նրանց պարզաբանել նոր եղանակի էությունն ու առավելությունները: Եվ այդ գործում կուսբյուրոն, կոմունիստները ցույց տվեցին իրենց գործնական աջակցությունը կոլտնտեսության վարչությանը, նախագահին: Որոշվեց դաշտավարությունում կիրառել բրիգադային և օղակային, անասնապահությունում՝ ընտանեկան և անհատական կապալային աշխատանքի եղանակը: Սկսած 1986-ից այդպես էլ արվեց: Դրանով իսկ բարձրացավ մարդկանց պատասխանատվությունը, ուժեղացավ փոխադարձ պահանջկոտությունը միմյանց նկատմամբ: Նրանք սկսեցին լուրջ շահագրգռություն դրսևորել վերջնական արդյունքների ստացման հարցում: Շահեց տնտեսությունը, շահեցին արտադրության մարդիկ: Ամեն մի կապալային կոլեկտիվի լրացուցիչ վաստակի չափը պայմանավորվեց իր տված վերջնական արդյունքով: Այսպես, 1986-ին այգեդաշտավարական № 1 բրիգադը ստացավ 40 հազար, № 2 բրիգադը՝ 42 հազար, իսկ № 3 բրիգադը՝ 47 հազար ռուբլի հավելավճար:

Կապալային աշխատանքի արմատավորման շնորհիվ էապես բարձրացել է խոզաբուծության շահութաբերությունը: Սա ավանդական ճյուղ է և միշտ էլ օգտավետ է եղել: Սակայն վերջին երկու տարվա ցուցանիշներն ավելի խոսուն են: Այստեղ զգալիորեն կրճատվել են անարտադրողական ծախսերը: Նախկին չորսի փոխարեն այժմ ֆերման սպասարկում են երկու մարդ՝ Վարդգես Գրիգորյանը և Կամսար Կարապետյանը: Երկուսն էլ փորձառու, պարտաճանաչ անասնապահներ են: Ամեն տարի տնտեսությունը պայմանագիր է կնքում ութ ընտանիքի հետ՝ կապալային եղանակով ավելի քան 320 գլուխ խոճկոր աճեցնելու վերաբերյալ: Միայն դրա հաշվին տնտեսությունը տարեկան շահում է 80 տոննա համակցված կեր:

Բարձր եկամտաբերությամբ աչքի է ընկնում նաև տավարի արու մատղաշի ինտենսիվ բտումը: Այդ գործը վստահված է կոմունիստ Զավեն Հակոբյանին: Այստեղ անցյալ տարի մթերակայան հանձնած 22 գլուխ մատղաշի միջին կենդանի քաշը կազմեց 425 կիլոգրամ, որը հանրապետությունում լավագույն ցուցանիշ է: Դրա շնորհիվ ժամկետից շուտ կատարվեց պետությանը մսի վաճառքի տարեկան առաջադրանքը և ստացվեց ավելի քան 10 հազար ռուբլու միայն հավելավճար:

Վերջապես, տնտհաշվարկի մասին: Այն ներդրվել է ոչ միայն տնտեսությունում, այլև նրա բոլոր փոքր ու մեծ արտադրական օղակներում: Հիմա բրիգադավարները, ֆերմաների վարիչները, ընտանեկան ու անհատական կապալի եղանակով աշխատողները լավ գիտեն իրենց մեկ տարվա ծախսերի ու եկամուտների չափերը և մեծ շահագրգռություն են հանդես բերում տրանսպորտն ու տեխնիկան, պարարտանյութերն ու սերմացուն, վառելանյութերն ու էլեկտրաէներգիան, պահեստամասերը, դրամական միջոցները ռացիոնալ, արդյունավետ և անկորուստ կերպով օգտագործելու հարցում: Արհկոմի նախագահ Ա. Մովսիսյանն ասում է.

«Հիմա մարդիկ հաշվարկով են աշխատում, մտածում են՝ հանկարծ տեխնիկան, տրանսպորտը պարապուրդ չտան, ավելորդ տեղը բենզին ու դիզելային վառելանյութ չծախսեն: Նախկինում, այսինքն՝ մեկ տարի առաջ, հաճախ էր վառելանյութի գերածախս տրվում, հիմա այդ մասին խոսելն ավելորդ է: Ինքը՝ բրիգադավարը կամ ֆերմայի վարիչն է հսկողություն սահմանում, որ տվյալ օրը իրեն հատկացված մեքենան աշխատի լրիվ հատույցով»:

Տնտհաշվարկը պահանջում է խնայել միջոցները, գտնել և գործի դնել ծախսերի կրճատման ու եկամուտների ավելացման նոր ռեզերվներ: Ահա այդ իրողության մի ցայտուն վկայություն: Կոլտնտեսությունում կային պահակների բավականաչափ հաստիքներ: «Ու՞մ են պետք,— մտածում էր նախագահը և յուրովի եզրակացնում,— եթե որևէ մեկն էլ ինչ-որ բան է տանում ֆերմայից, դաշտ ու այգուց, ապա պահակների թույլտվությամբ և աջակցությամբ»: Եվ շուտով պահակների հաստիքները վերացվեցին: Տնտեսությունը մեծապես շահեց՝ խնայելով զգալի աշխատավարձ, խիստ նվազեցին, ապա՝ բացառվեցին հանրային ունեցվածքին ձեռք մեկնելու փաստերը... Հիմա բերք ու բարիքի նկատմամբ հսկողությունն ու հոգատարությունը համընդհանուր են:

Կապալային աշխատանքը և տնտհաշվարկը տակավին կատարելագործման ու լայն արմատավորման կարիք ունեն: Եվ կոլտնտեսության վարչությունն ու կուսբյուրոն ձգտում են դրանք դարձնել աշխատանքի կազմակերպման ու վարձատրման, ինքնաֆինանսավորման ու ինքնածախսածածկման գլխավոր միջոց, տնտեսական ու սոցիալական զարգացման արագացման կարևոր լծակ...

## ՀԱՆՈՒՆ ՄԱՐԴՈՒ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ

Սովետականի բնակիչների ներկա սերունդը ժառանգորդն է նախկին խնուսցիների ու բիթլիսցիների, սասունցիների ու ալաշկերտցիների, որոնք բախտի բերումով փրկվել են թուրքական յաթաղանից:

Հիմա գյուղի հիմնադիր-վկաներից քչերն են մնացել: Նրանցից մեկը Բագրատ Մուշեղյանն է՝ ութսունես տասնամյակը բոլորած, սակայն տակավին առույգ մի տղամարդ: Այնպես է պատմում, կարծես երեկվա դեպքերի հետ գործ ունի: Տասնմեկ տարեկան է եղել, երբ Արևմտյան Հայաստանում ծայր է առել կոտորածը: Հորը վաղ է կորցրել, մոր, երկու եղբայրների ու երկու քույրերի հետ փախել է Ալաշկերտից, բռնել գաղթի ճամփան և, ի վերջո, հիմնվել այս գյուղում: Կիսավեր բնակավայրն ասես միանգամից շունչ է առել, կենդանացել: Անցել են տարիներ, գյուղը, ասես ի նշան երախտագիտության, կոչվել է նոր անունով՝ Սովետական: Ալաշկերտցի Բագրատ Մուշեղյանի օրինակը գյուղի վերընթացի յուրատեսակ չափանիշն է. բատրակությունից մինչև գյուղական սովետի նախագահ, բրիգադավար, հիմա էլ արժանի հանգիստ է վայելում: Կրծքին ՍՄԿԿ-ում գտնվելու 50 տարվա վկայություն-նշանն է: Գոհ է կյանքից Բագրատ պապը. վեց տղաներն ու աղջիկները նրան 25 թոռ ու 12 ծոռ են պարգևել: «Խմելու ջուր ունենք,— ասում է նա,— բնական գազ ունենք, հեռախոս, հեռուստացույց ու սառնարան ունենք, ավտոմեքենա ունենք, ի՞նչն է պակաս...»:

Սովետականում հնի հետքը չի նշմարվում, հինը մնում է տարեցների հուշերում: Մեզ արդեն ծանոթ Զ. Վարդանյանը, որի հայրը պատանի հասակում ծնողներին, եղբորն ու քրոջը կորցրել է գաղթի ճանապարհին և Ալաշկերտի գավառից եկել-հասել է այստեղ, ներքին հպարտությամբ է ասում.

— Քսանական-երեսնական թվականներին մարդիկ լավը համարում էին այն, որ քնում էին փայտե թախտին, իսկ հիմա ժամանակակից մահճակալն էլ բավարար չեն համարում: Իմ տանն ամեն ինչ էլ կա, ոչ մի բանի կարիք չեմ զգում: Երեք տղա ունեմ, տասներկու թոռնիկ, չորս տուն ունենք, չորս մարդատար ավտոմեքենա:

Մարդկանց բարեկեցության բարձրացման ասպարեզում Սովետականում հիրավի շատ բան է արվել: Սակայն, երբ արածը գնահատում ես այսօրվա պահանջների չափանիշներով, ապա ակներև են դառնում նաև լուրջ թերացումները:

Նախագահը լավ է պատկերացնում իր անելիքները: Երբ առաջին անգամ ոտք դրեց Սովետական, տպավորությունն այնքան էլ բարենպաստ չէր. առաջինը, որ գրավեց նրա ուշադրությունը, պատերազմում զոհված սովետականցիների հուշարձանի շուրջն ընկած ընդարձակ տարածությունն էր՝ անմաքուր, անհրապույր: «Լավ հրապարակ կդառնա, մի քանի օրվա գործ է,— ինքն իրեն ասաց նա: Հետո խորհրդակցեց կուսբյուրոյի քարտուղարի, գյուղսովետի գործկոմի նախագահի հետ: Մտահղացմանը հավանություն տվեցին: Եվ 1986-ին գյուղի կենտրոնի կարգավորման գործը ծայր առավ, ծավալվեց: Հատկապես մեծ ակտիվություն դրսևորեցին կոմերիտականները: Եվ ծնունդ առավ գյուղի հրապարակը՝ ընդարձակ, ակնահաճո. ձախ եզրին հուշարձանը, դեմդիմաց զբոսայգին՝ տակավին մատղաշ ծառերի ուղղաձիգ շարքերով:

Ու հերթով սկսեցին լուծվել սոցիալական զարգացման շատ կարևոր ու կենսական հարցեր: Բարեկարգվեց մանկապարտեզի բակը, նորոգվեց դպրոցական շենքը, համարավետ շենքեր հատկացվեցին փոստին, բուժկետին, խնայդրամարկղին, անցկացվեց ավտոմատ հեռախոսային ցանց, լուծվեց բնական գազով ապահովվածության պրոբլեմը, հանգստի սենյակներ կահավորվեցին կաթնապրանքային ու խոզաբուծական ֆերմաներում:

Նախագահը քաջ գիտի, որ զգայուն, ուշադիր վերաբերմունքով մարդկանց կարելի է ամուր կապել հայրենի հողի հետ, ակտիվորեն ներգրավել հանրօգուտ աշխատանքում: Եվ նա իր պարտքն է համարում հոգալ արտադրության մարդկանց հոգսերը, ժամանակին բավարարել նրանց պահանջները: Փոխադրական միջոցնե՞ր են հարկավոր անհատական բնակարաններ կառուցողներին, նա դրանք տրամադրում է, խմելու ջուր և ոռոգման ցանց պիտի անցկացնե՞լ կոլտնտեսականների համար, օգնում է ձեռք բերելու խողովակներ ու կիսախողովակներ: Անցած երկու տարում կոլտնտեսության վարչությունը տնամերձ հողամաս է հատկացրել 72 երիտասարդ ընտանիքի: Նրանցից 25-ը արդեն նշել են բնակարանամուտը: Այսօր մանկապարտեզի շենքը նորոգման կարիք է զգում, նախագահին դա հայտնի է, և նա 10 հազար ռուբլի է նախատեսել այդ նպատակի համար:

Բնավ զարմանալի չէ, որ մարդիկ հաճությամբ են աշխատում ֆերմայում, դաշտում ու այգիներում: Նույնիսկ գյուղատնտեսական աշխատանքների ամենաեռուն շրջանում կոլտնտեսությունը բանվորական ուժի պակաս չի զգում: Արդեն 1986-ին տնտեսությունը մեկ միլիոն ռուբլուց ավելի դրամական եկամուտ ստացավ, գերակատարեց օգուտների պլանը և կարողացավ փակել ոչ միայն 1985-ի 90 հազար ռուբլու պարտքը, այլև հիմնական ֆոնդերի զարգացմանը տրամադրել 300 հազար, խրախուսման ֆոնդին 27 հազար ռուբլու դրամական միջոցներ, լրացուցիչ վարձատրության կարգով կոլտնտեսականներին բաշխել 90 հազար, սոցիալիստական մրցության հաղթողներին՝ 2510 ռուբլի: Զգալիորեն ավելացել է նաև կոլտնտեսականների աշխատավարձը: Վաչագան Մալյանի, Ջիվան Մովսիսյանի, Գարեգին Հարությունյանի, Իլյիչ Պետրոսյանի ընտանիքների տարեկան վաստակը կազմում է 11.200—13.600 ռուբլի:

Այսուհանդերձ, հարցեր կան, որոնց լուծման ձգձգումը խոչընդոտում է վերակառուցման ընթացքին: Կոլտնտեսության նախագահը դժգոհում է. «Տեխնիկայով ապահովվածությունը շատ վատ է, այն հին է, չնայած միջոցներ ունենք, սակայն չենք կարողանում գյուղատնտեսական մեքենաներ ձեռք բերել: Հին են նաև անասնապահական շենքերը, դրանք կառուցվել են 30—40 տարի առաջ, չունենք անհրաժեշտ պայմաններ կերի բաշխումը նույնպես մեքենայացնելու համար: Գոմաշինության համար միջոցներ ունենք, միայն հարկավոր է մի շինարարական կազմակերպություն, որն ստանձնի այդ գործը»:

Որքան զարմանալի, նույնքան տարօրինակ է, որ Սովետականի նման տնտեսությունը մինչև օրս ծածկած մեքենատրակտորային հավաքակայան չունի: Տրակտորները, գյուղատնտեսական մեքենաներն ու կցվող գործիքները ընկած են

բաց երկնքի տակ: Ծածկ կառուցելու համար կոլտնտեսությունը համապատասխան միջոցներ ունի, սակայն այդ գործը ձեռնարկող շինարարական կազմակերպություն չկա...

Կոլտնտեսության, գյուղի ղեկավարները Սովետականում կենցաղի տուն կառուցելու հարցով բազմիցս դիմել են Հոկտեմբերյանի բնակչության կենցաղային սպասարկման միավորման ղեկավարությանը և պատրաստակամություն հայտնել այդ նպատակի համար հատկացնել 50 հազար ռուբլի: Սակայն այդ հարցի լուծումը նույնպես ձգձգվում է... 1986—1987-ին կոլտընտեսությունը չի ստացել ոչ մի կիլոգրամ ցեմենտ, ոչ մի հատ շիֆեր, ոչ մի խորանարդ մետր շինափայտ: Չնայած բազմաթիվ պահանջներին, ՇԱԱՄ-ը ավտոմեքենա և տրակտոր չի հատկացնում: Զարմանալի ու տարօրինակ է, որ տարիներ շարունակ ձգձգվում է սոցիալական ու տնտեսական զարգացման նույնիսկ ոչ այնքան բարդ խնդիրների լուծումը: Մի՞թե այդ իրավիճակը չի անհանգստացնում Հոկտեմբերյանի շրջանային կազմակերպությունների ղեկավարներին: Վաղուց ժամանակն է, որ սայլը տեղից շարժվի, վերջ դրվի սոցիալական հարցերի նկատմամբ «մնացորդային» մոտեցմանը:

Առաջիկա տարիներին կոլտնտեսության առջև նոր խնդիրներ են ծառանում: Նախատեսվում է զգալիորեն ավելացնել բուսաբուծական ու անասնապահական մթերքների արտադրությունը: Այդ հարցերը լուծելու համար անհրաժեշտ է գործի դնել արտադրության զարգացման նոր ռեզերվներ: Խոսքը նախ վերաբերում է ոռոգման գործի արմատական բարելավմանը: Բանն այն է, որ տնտեսության բոլոր հողահատվածները գտնվում են ոռոգման ցանցի տակ, սակայն, դրանց 50 տոկոսն է ապահովված ջրով: Նախատեսվում է ընթացիկ տարում ավարտել կիսախողովակների տեղադրումը և դրանով իսկ բոլոր դաշտերը ապահովել ոռոգման ջրով, իսպառ կանխել ջրի կորուստները: Եվ, երկրորդ, կոլտնտեսության վարչությունը հարց է հարուցել շրջանի ղեկավար մարմինների առջև՝ աղուտային հողերից 150 հեկտար հատկացնել իրենց տնտեսությանը: «Այնտեղ,— ասում է նախագահը,— կարելի է հացահատիկ ու կերաբույսեր ցանել, իսկ եղած լավ հողերը հատկացնել բանջարանոցային կուլտուրաներին»:

Սովետականից հեռանում ես այն զգացումով, որ նրա մարդիկ եռանդով շարունակում են իրենց հայրենանվեր աշխատանքը և, վերակառուցման գործում ձեռք բերած նոր հաջողություններով դիմավորում համամիութենական XIX կուսկոնֆերանսը:



# ՄԵՐ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ՏԱՐԵԳԻՐԸ

## ՄԱՐԻԵՏԱ ՇԱՀԻՆՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

ՄԱՐԻԵՏԱ ՇԱՀԻՆՅԱՆԻ մահվան քառասուներորդ օրը (կտակի համաձայն նա թաղված է հայկական գերեզմանատանը, Մոսկվայում՝ իր կրտսեր քրոջ կողքին) նրա հուժկու տաղանդի իսկական երկրպագուներից մեկը գրողի գերեզմանի վրա ասաց.

— Մարիետա Շահինյանը հայ ժողովրդի պարգևն է ռուսական և ողջ համաշխարհային մշակույթին:

Մարիետա Սերգեյի Շահինյանը հիրավի բացառիկ երևույթ էր և՛ գրականության մեջ, և՛ կյանքում: Բավական է ասել, որ նրա ակտիվ ստեղծագործական կյանքը տևել է շուրջ ութսուն տարի: Առաջին անգամ հրապարակվել է տասնհինգ տարեկան հասակում, իսկ վերջին՝ «Հարյուրամյակը ափի մեջ» գիրքը նա ավարտել է, երբ իննսուներեք տարեկան էր: Անչա՞փ հազվագյուտ դեպք համաշխարհային գրականության պատմության մեջ:

Նրա անունը դասվում է այն մեծ ստեղծագործողների շարքում, որոնք անցյալի գրականության հումանիստական վեհ ավանդույթները միացրել են նոր սոցիալիստական մշակույթին: Նա պատկանել է հանրագիտակների համաստեղությանը: Կրթությամբ լինելով փիլիսոփա՝ Շահինյանը միաժամանակ պատմաբան էր և սոցիոլոգ, տնտեսագետ ու մանկավարժ, երաժշտության և գեղանկարչության, ճարտարապետության ու քանդակագործության նուրբ գիտակ: Նա տիրապետում էր եվրոպական մի քանի լեզուների և արևմտյան դասականներին կարդում էր բնագրով:

Շահինյանը իսկական ինտերնացիոնալիստ էր: Լինելով հայ ժողովրդի դուստր՝ նա խոր հետաքրքրություն էր ցուցաբերում նաև այլ ժողովուրդների մշակույթի նկատմամբ: Նրա գրչին են պատկանում հետազոտություններ Գյոթեի, Տ. Շևչենկոյի, Նիզամիի, Յո. Միսլիվեչեկի մասին, հոդվածներ Հեգելի, Հայնեի, Պուշկինի մասին, Գոգոլի, Գորկու, Շոլոխովի, Ախմատովայի, Ցվետաևայի, Շոլոմ-Ալեյխեմի, Կոստա Խետագուրովի մասին, «Կալևալայի» մասին... Նա աշխատություններ է նվիրել Չեխոսլովակիայի, Անգլիայի, Գերմանիայի, Ֆրանսիայի, Իտալիայի, Հոլանդիայի, Շվեյցարիայի հոգևոր արժեքներին... Թեպետ թվարկումը ընթերցողին հրապուրելու լավագույն միջոցը չէ, այդուհանդերձ չենք կարող չնշել հայ գրականության ու արվեստի նկատմամբ նրա ունեցած առանձնահատուկ հետաքրքրությունը: Ուստի ստիպված ենք դարձյալ դիմել թվարկելու «ժանրին»: Մ. Շահինյանը գրել է բովանդակությամբ խոր և ձևով կատարյալ հոդվածներ Մեսրոպ Մաշտոցի, Խաչատուր Աբովյանի, Հովհաննես Թումանյանի, Ավետիք Իսահակյանի, Եղիշե Չարենցի, Մարտիրոս Սարյանի, Ժորժ Յակուլովի մասին, իտալահայ նկարիչ Գրիգոր Շիլտյանի մասին... Նա արձագանքել է Հայաստանի մշակութային կյանքի շատ իրադարձությունների՝ Մոսկվայում հայկական արվեստի տասնօրյակին, թատրոնների պրեմիերաներին, Համո Բեկնազարյանի նշանավոր կինոնկարներին:

Գիտելիքների լայն ընդգրկումը Մ. Շահինյանին օգնել է իր տեսակետը մշակելու այն բանի նկատմամբ, թե ամենից շատ ինչ է պահանջվում մեր ազգային մշակույթների զարգացման համար: Դա նախ և առաջ չափանիշների բարձրությունն է: Շատ տարիներ առաջ նրա արտահայտած տեսակետը ոչ միայն չի կորցրել իր հրատապությունը, այլև առանձնահատուկ սրություն է ստացել վերակառուցման ներկա ժամանակաշրջանում, ստեղծված շատ հասկացությունների իմաստավորման շրջանում: Ահա թե ինչ էր ասում նա.

«Ժողովրդի կուլտուրան մեծապես կախված է այն մասշտաբի **խստապահանջությունից**, որով չափում են դրա առանձին ստեղծողների արժանիքները: Երբ առկա են համաշխարհային ժամանակակից հանճարներ, այդ մասշտաբը անփոփոխ բարձր է: Եվ գնահատման խստապահանջությունը տանում է դեպի աշխատողների ընդհանուր մակարդակի բարձրացում, համեստությամբ է տոգորում և՛ իրենց

ծառայությունների, և՛ իրենց տաղանդի գիտակցման մեջ: Չէ որ այն, ինչ մենք անվանում ենք կուլտուրական միջավայր՝ միջավայրը, կենտրոնը, ձևավորվում է ըստ ժողովրդի ձեռք բերած բարձրագույն կետերի: Բայց լինում է, որ բարձր մասշտաբները մոռացված են կամ դրանք չկան, իսկ մակարդակը, միջինը հանվում է ըստ ամենացածր կետերի: Այդ դեպքում «մեծ մարդ» են դառնում ապաշնորհ կամ գորշ անձինք՝ իրենց հերթին իրենցով իսկ իջեցնելով իր ժամանակի կուլտուրական միջավայրը»:

Նա ինքն էր տալիս ստեղծագործության նկատմամբ բարձր պահանջկոտության, անողոք ինքնավերլուծման օրինակ՝ գտնելով, որ մարդու համար ամենից կարևորը սեփական արարքների ու մտքերի բարոյական հստակ գնահատականն է:

Պոեզիա, արձակ, ակնարկ, թատերագրություն, ֆելիետոն, հեքիաթ, թարգմանություն, քննադատություն, գրականագիտություն՝ բոլոր, տառացիորեն բոլոր ժանրերն էլ հնազանդվում էին նրա գրչին: Իսկ հրապարակախոսությունը միշտ էլ եղել է նրա առավել «գնային» ժանրը, որը նա հասցրեց բարձր արվեստի մակարդակի:

Ծահինյանի յուրաքանչյուր հոդվածում, յուրաքանչյուր ակնարկում ալեկոծվում է իր գրած խոսքի կենդանի ու ներգործուն ուժը: Նյութի խոր ընդհանրացումն ու իմաստավորումը՝ մի կողմից, անձնական մասնակցությունը այն ամենին, ինչի մասին պատմվում է՝ մյուս կողմից, կազմում են Ծահինյանի հրապարակախոսական աշխատանքի ընդհանուր գծերը: Գրողի մեծ գրքերն աճել են հենց այդպիսի հրապարակախոսության հատիկներից՝ սկսած «Հիդրոցենտրալ» վեպից, որը մտել է սովետական դասական գրականության մեջ, որպես սոցիալիստական շինարարության գեղարվեստական տարեգրություն, մինչև չորս մասից բաղկացած լենինապատումը, որի համար Մ. Ծահինյանին շնորհվել է լենինյան մրցանակ:

Իր ստեղծագործական կյանքը Մարիետա Ծահինյանն սկսել է հենց հրապարակախոսությունից: Նրա 1903 թվականին հրապարակված առաջին նյութը, որի մասին ասվեց վերևում, «Գելենջիկյան մոտիվներ» չափածո ֆելիետոնը, իրավամբ կարելի է դասել բանաստեղծական հրապարակախոսության կարգը: Դա մի հույն մեծահարուստի հակամարդասիրական արարքի քաղաքացիական սուր դատապարտում էր. մեծահարուստը Գելենջիկի հասարակական լողափը լիքը ցրել էր վառելափայտ: Եվ դա նա գրել էր, կրկնում եմ, տասնհինգ տարեկան հասակում. սոցիալական հոտառությունը նրա մեջ շատ էր արթնացել: Ամոթահար մեծահարուստը ստիպված էր եղել մաքրել լողափը:

Երբ ճայթեց ռուսական առաջին հեղափոխությունը, Մ. Ծահինյանը, ինչպես և Մոսկվայի ողջ առաջադիմական երիտասարդությունը, խանդավառությամբ ընդունեց այն: Տոհմական մտավորականների դուստրը ներքնակներ էր հասցնում այն բարիկադներին, որոնք տարերայնորեն առաջանում էին հեղափոխական Մոսկվայի ամենաթեժ կետի՝ բանվորական Պրեսնյայի կողքի փոքրիկ փողոցներում: Նա սկսեց ակտիվորեն աշխատակցել «Ռեմեսլեննի գոլոս» թերթին:

Բայց ռուսական առաջին հեղափոխությունը սկսել էր վայրէջք ապրել: Ցարական գրաքննությունը փակում էր առաջադիմական թերթերը: Եվ այդ ժամանակ ձեռներեց խմբագիրներից մի քանիսը սկսեցին թերթերը հրատարակել ուրիշ անուններով: Ծահինյանն սկսեց աշխատակցել «Տրուդովայա ռեչ» թերթին:

Անցնում էին տարիները, ռեակցիան ուժեղանում էր: Ծահինյանը շարունակում էր գրել հոդվածներ, պատմվածքներ: Բայց նաև բանաստեղծություններ: 1909 թվականին լույս է տեսնում նրա առաջին ժողովածուն՝ «Առաջին հանդիպումները», իսկ 1913 թվականին՝ «Orientalia»-ն, որոնք ճանաչում և ժողովրդականություն բերեցին երիտասարդ բանաստեղծուհուն: Ինը տարում «Orientalia»-ն ունեցավ յոթ հրատարակություն:

Մոսկվայի նրա հայրական տունն էին այցելում Սպենդիարով եղբայրները, այն ժամանակ դեռ ամոթխած ուսանող Ալեքսեյ Ջիվիլեգովը, որը հետագայում դարձավ աչքի ընկնող արվեստաբան: Այնտեղ լինում էին նաև հայագետներ: Մյուսներից ավելի հաճախ՝ հայտնի հայագետ Յուրի Վեսելովսկին: Բանաստեղծուհին լսում էր հյուրերի պատմությունները, իր հոր՝ բժշկության դոկտոր Սերգեյ (Սարգիս) Դավիթի Ծահինյանցի պատմածները Հայաստանի մասին, հայերի ողբերգական բախտի մասին: Նրա պատանեկան հոգու մեջ թափանցել էր իր հարազատ երկրի, հարազատ մարդկանց կերպարը: Եվ նա նուրբ ու հոգեպարար բանաստեղծություն է նվիրում Հայաստանին:

1917 թվականի օգոստոսին Ծահինյանն իր ամուսնու՝ Պետերբուրգի համալսարանում բարձրագույն բանասիրական կրթություն ստացած Յակով Սամսոնի Խաչատրյանցի հետ, կատարում է իր առաջին ուղևորությունը Հայաստան: Այդ ուղևորությունը ավելի շատ հարսանեկան չէր (թեև նրանք նոր էին ամուսնացել), այլ կրում էր ճանաչողական-գիտական բնույթ: Հայկական ազգագրական ընկերության այն ժամանակվա նախագահ Երվանդ Լալայանցի հետ նրանք առաջին



կանգառն արեցին Հաղպատ աղքատիկ գյուղում, որտեղ այն ժամանակ լքված տաճարի մոտ պեղեցին մի քանի գերեզմանաբլուրներ, բայց ոչինչ հայտնաբերել չհաջողվեց: Հնագիտության բնագավառում բախտը չբերեց: Բայց դրա փոխարեն Ծահինյանը երջանիկ հնարավորություն ստացավ լսել տեղացի ծերունիների պատմածները, որոնց բերանից Լալայանցը գրի առավ բազմաթիվ ավանդություններ ու քառյակներ: Իսկ դա չափազանց հետաքրքրական էր Մարիետա Ծահինյանի համար: Այն ժամանակ նա հրապուրված էր հայկական ժողովրդական հեքիաթների ուսումնասիրմամբ, որոնց մասին գրեց ծանրակշիռ աշխատություն:

Օգոստոսի տասնմեկին (արդեն Երևանում) նա իր օրագրում գրել է. «Առավոտյան վերջացրի մի հոդված»: Բայց դա ի՞նչ հոդված է եղել: Ինչի՞ մասին: Պարզվեց, որ այնքան էլ բարդ բան չէր իմանալ դա, մանավանդ որ օրագրում դրանից մի քիչ առաջ գրված էր. «Գլխավոր տաճարի ներքնամասը... խիստ է և կուռ, բայց այն ավերվում է. բոլոր քարերը ծակծկված են, փչացած, խոնավություններից քայքայվում են: Անցքերի մեջ ամենուրեք փխրուն ավազ է, որը նստում է քարերի քայքայումից: Մի հիսուն տարի հետո ամեն ինչ փոշի կդառնա... Ոչ ոք չի պահպանում»: Այս թռուցիկ օրագրային գրառումները նա դարձրեց պրոբլեմային և հուզիչ հոդված այն մասին, թե ինչպես են կործանվում միջնադարյան ճարտարապետության գանձերը և այն մասին, որ պետք է անհապաղ կործանումից փրկել հին օրերի անգնահատելի հուշարձանները: Իզուր: Ոչ ոք մատն անգամ չշարժեց: Այն խառնակ օրերին ու՞մ հոգսն էին այդ հնությունները: «Կավկազսկի վեստնիկ»-ում հրապարակած հոդվածը եղավ ձայն բարբառո հանապատի:

Բայց ահա երեսուն տարի անց Մ. Ծահինյանը, աշխատելով «Ճանապարհորդություն Սովետական Հայաստանում» մեծ գրքի վրա, նորից այցելեց Հաղպատ և դառնության ու երկյուղի նախկին զգացումները փոխվեցին նոր երանգով՝ լավատեսական: Նա գրեց. «Կարծես անցել է ոչ թե երեք տասնամյակ, այլ երեք հարյուր տարի է թռել-անցել նրանց վրայով՝ այնքան մեծ են այստեղ տեղի ունեցած փոփոխությունները»:

Պետությունը իր վրա վերցրեց նշանավոր Հաղպատի վանքի պահպանությունը, և նրան արդեն չի սպառնում ավերումը:

Տասնյոթ թվականի այն օգոստոսյան օրերին ամուսնական զույգն այցելեց նաև հայոց միջնադարյան մայրաքաղաք Անիի ավերակները, որտեղ այն ժամանակ եռանդուն պեղումներ էր կատարում ակադեմիկոս Ն. Մառը: Բայց այդ մասին Մարիետա Ծահինյանը կգրի հիսուն տարի հետո միայն իր «Մարդը և ժամանակը» հուշերի գրքում, իսկ այն ժամանակ օրագրում հակիրճ գրել էր. «Անին ինձ թվում է Պոմպեյից ավելի նշանակալի: Այս քաղաքը, անկասկած, դարագլուխ կլինի հնագիտության մեջ»: Հնագիտության մեջ Անին դարագլուխ չդարձավ: 1920 թվականի պայմանագրով Արփաչայ (այժմ՝ Ախուրյան) գետի աջ ափը Անիի ավերակներով անցավ Թուրքիային: Ավերակներն անմարդաբնակ են, և եթե երբեմն այնտեղ հայտնվում են մարդիկ, ապա լոկ նրա համար, որ մեքենաները բեռնեն միջնադարյան հայ վարպետների հրաշագործ ձեռքերով զարդաքանդակված քարերով:

Երևանում Մարիետա Ծահինյանին խնդրեցին դասախոսություն կարդալ: «Դասախոսությունը շատ հաջող անցավ,— գրառում կա նրա օրագրում,— ես հսկայական ներքին բավականություն էի զգում դասախոսության ամբողջ ընթացքում, ինչպես լինում է, երբ բուռը բուռ բաժանում ես քո ունեցածը և թվում է, թե երբեք չես աղքատանա»: Այդ օրերին «Դպրոցի դրոշը» տեղական թերթում հրապարակվեց մի թղթակցություն Մարիետա Ծահինյանի՝ «Հայ սոցիալիստ Միքայել Նալբանդյանը» դասախոսության մասին: Եվ թղթակցության մեջ մի կարճ հարցազրույց: Այն հարցին, թե որ կուսակցության է պատկանում ինքը, Մարիետա Ծահինյանը պատասխանել է. «Ես, նախ, բանաստեղծ եմ և ուստի ամեն բանի մեջ փնտրում եմ ճշմարտություն: Հոգով սոցիալիստ եմ... Պատերազմի հարցում ավելի շատ բոլշևիկ եմ»: Գրողի պատասխաններն արտացոլեցին մի նոր փուլ նրա քաղաքական հայացքներում, արդեն պատմության դռները բախող սոցիալիստական հեղափոխության գաղափարներին նրա հաղորդակից լինելու մեջ:

Երիտասարդ ամուսինների հարսանեկան ճանապարհորդությունը ուղեկցվում էր վաստակի մասին մշտական հոգսերով: «Մենք երկուսս էլ,— ավելի ուշ կգրի Ծահինյանը,— չունևոր էինք... Աղքատությունը մեզ շարունակ աշխատանքի էր մղում»: Բայց այդ աշխատանքը նրան թվում էր աննպատակ, ավազի մեջ կորչող, ծանր, ինչպես «ձեռքի կապանքներ»: Եվ նա ձգտում էր «նոր աշխատանքի՝ առանձնահատուկ, գիտակցական աշխատանքի, որը նման չլիներ նախկինին...»:

Հոկտեմբերն ու քաղաքացիական պատերազմը Մարիետա Ծահինյանն ապրեց Դոնում: Հենց որ բացվեցին առաջին սովետական հիմնարկները, նա առաջարկեց իր աշխատանքը, որպեսզի ինչ-որ բանով օգտակար լինի նոր կարգերին: Նրա մի շարք միամիտ նախաձեռնություններից հետո նրան առաջարկեցին մանածագործության հրահանգչի պաշտոն:

Նրա հարցաթերթիկներից մեկում կարդացել էին, որ դեռ հեղափոխությունից առաջ ավարտած է եղել մանածագործական դասընթացներ և ստացել մանողի որակավորում:

Ի՜նչ ջերմությամբ, ինչպիսի՜ ոգևորությամբ նա ձեռնամուխ եղավ նոր գործին: Ցուցաբերելով արտակարգ կազմակերպչական ընդունակություններ՝ Մ. Շահինյանը Դոնի Ռոստովում ստեղծում է մանածագործական դպրոց, սարքավորումներ, հումք հայթայթում դպրոցի համար, ստանիցաներում երիտասարդ կազակուհիներին մանածագործություն սովորեցնելու հավաքագրում: Նա մշակում է «Դոնի Ռոստովի առաջին սովետական մանածագործական դպրոցի» նախագիծը: Այդ նախագիծը հետաքրքրական է նաև այժմ՝ որպես արտադրական ուսուցումը նոր հասարակարգի կառուցման գործում իրենց դերը գիտակցող բանվոր մասնագետների դաստիարակության հետ միացնելու փորձ:

Բանաստեղծուհին ու հրապարակախոսը այդպես դարձավ մանածագործության հրահանգիչ: Այդ մասին նա ավելի ուշ անչափ հետաքրքիր կգրի իր առաջին սովետական ակնարկում, որը այդպես էլ կոչվում է. «Թե ես ինչպես մանածագործության հրահանգիչ էի»: Այդ ակնարկը «Ճշմարտացի պատմություն» ենթավերնագրով հրապարակվել է «Նովայա Ռոսսիյա» հանդեսում 1922 թվականին:

Բայց նա «տեքստիլ թեմային» դեռ կվերադառնա: 1924 թվականին ժողովրդական տնտեսության բարձրագույն խորհրդի մամուլի կենտրոնական վարչությունը նրան հանձնարարել էր գրել Լենինգրադի տեքստիլ-մանածագործական ֆաբրիկաների մասին: Եվ այդ բանը նա արեց իրեն հատուկ հիմնավորվածությամբ: Ամբողջ ձմեռն աշխատելով ձեռնարկություններում, ինչպես ասում են նյութը «շոշափելով» սեփական ձեռքերով, նա գրեց երեք ակնարկ, որոնցից մեկը՝ «Տորնտոն ֆաբրիկան» նվիրեց Լենինի հիշատակին*: Այդ ակնարկի երկրորդ հրատարակությունը 1927 թվականին լույս տեսավ Ն. Կ. Կրուպսկայայի առաջաբանով:

1927 թվականի աշնանային մի առավոտ Մ. Շահինյանը գնացքից իջավ Քոլագերան կայարանում: Ժայռերի մեջ կորած փոքրիկ կայարանի հարևանությամբ սկսվում էր այն ժամանակի համար խոշոր հիդրոէլեկտրակայանի շինարարությունը Ձորագետի վրա: Նա կառույց էր եկել «Իզվեստիայի» վկայականով, թերթի այն ժամանակվա խմբագիր Իվան Սկվորցով-Ստեպանովի գործուղմամբ: Շահինյանը տեղավորվեց կառույցում, փայտաշեն բարաքներից մեկում՝ ապագա ամբարտակի կողքին: Տեղավորվեց, որպեսզի վեպ գրի և կատարի «Իզվեստիայի» թղթակցի պարտականությունները: Բայց նա կառույցի հասարակ դիտորդ չէր և ոչ էլ արձանագրող այն ամենի, ինչ տեղի էր ունենում այնտեղ: Եվ ոչ միայն որպես ակտիվ հասարակական գործիչ, այլև... աշխատում էր բահը ձեռքին, մասնակցում փայտակոճերի տեղադրմանը, գեոդեզիական աշխատանքներին: Մ. Շահինյանն այդպես «մուտք գործեց» թեմայի մեջ, հարազատացավ իր հերոսների՝ ապագա վեպի կերպարների կյանքին, նրանց հոգեբանությանը, կառույցի «հոգեբանությանը»:

Շինարարության գործերի մասին բազմաթիվ կարևոր, օպերատիվ գրառումներ են պարունակում Մ. Շահինյանի օրագրերը: Նա արձանագրում էր ոչ միայն մարդկանց, նրանց աշխատանքի, բնավորության վերաբերյալ իր դիտարկումները և ոչ միայն գրի առնում թերությունները, իր նկատած վրիպումները, այն կեղծիքը, որ նա հայտնաբերում էր, այլև իրեն հատուկ բուռն ակտիվությամբ հանդես էր գալիս դրանց դեմ: Օրինակ, ջրերի գարնանային վարարման ժամանակ փուլ էր եկել կառուցված կամուրջը, ավերվել ամբարտակը: Մինչդեռ հնաքնակները նախազգուշացնում էին, որ չի կարելի, վտանգավոր է գերանավանդակները թողնել առանց ամրացնելու: Տեղի ունեցածի իսկական պատճառները թաքցնելու նպատակով ղեկավարները ամեն ինչ բարդեցին տարերքի վրա: Մարիետա Շահինյանը պահանջեց լրջորեն վերլուծել դեպքի պատճառները և լուրջ հետևություններ անել դրանից՝ չէ որ բանվորական ձեռքերի որքան ջանք, որքան միջոցներ էին աննպատակ ծախսվել: Ղեկավարության մեծամտությունը, նրա կեղծ ինքնասիրությունը հաղթեց: Տարերքը՝ և վերջ:

Մի քանի օր հետո «Զարյա վոստոկան» հրապարակեց Մ. Շահինյանի հոդվածը, որը շատ աղմուկ բարձրացրեց: «Ես գիտեմ,— գրել է նա օրագրում,— որ ես կատարեցի լուսատու գազի մեջ նետված լուցկու դեր: Եթե ուրիշ ուժեր չլինեին, բացի ճշմարտության ուժից, ես ավելի թեթև կզգայի...»: Իսկ «Հիդրոցենտրալ» վեպում նա հետագայում կրքոտ ու ճշմարտացի մի ամբողջ գլուխ կնվիրի կամուրջի հետ տեղի ունեցած դեպքին: Գլուխը այդպես էլ կկոչվի՝ «Կամուրջ»:

Որքան էլ նրան ծանրաբեռնեին կառույցի գործերն ու վեպի վրա կատարած աշխատանքը, Մարիետա Շահինյանը ժամանակ էր գտնում «թեմատիկ անցումներ» կատարելու համար: Եվ դա միշտ էլ եղել է արգասավոր: Այն ժամանակ նա եղավ Աջարիայում՝ Ռիոնի ՀԷԿ-ի շինարարությունում, Ճիաթուրայում և Դաշքեսանում, մեկնել էր Աբխազիա, ուսումնասիրել Տղվարչելիի ածխավազանի պրոբլեմները և հոդված գրել դրա մասին: Իսկ 1928 թվականի ամռանն էլ դեռ բարձրացավ Արագած լեռը: Մ. Շահինյանը առաջին կինն էր, որը պարգևատրվել էր առաջին աստիճանի ալպինիստի կրծքանշանով: Բայց լեռը բարձրանալը ինքնանպատակ չէր: Նա ուսումնասիրեց այդ լեռը, նրա ստորոտի հազվագյուտ քարհանքերի տնտեսական նշանակությունը, տեղական բնակիչների կենցաղն ու բարքերը: Եվ կենտրոնական մամուլում հրապարակեց մի ամբողջ շարք գրավիչ, պրոբլեմային, հետաքրքրական ակնարկներ:

* Անցյալ դարի վերջին Վլադիմիր Իլյիչ Լենինը հեղափոխական աշխատանք էր տանում Նարվայի ուղեկալից այն կողմ:



Եվ նորից վերադարձավ Ձորագէսի շինարարություն, նորից ձեռնամուխ եղավ «Հիդրոցենտրալ» վեպին, որն ավարտեց ու հրապարակեց Ձորագէսի գործարկումից առաջ: 1933 թվականին Մարիետա Շահինյանն արժանացավ իր առաջին կառավարական պարգևին՝ Հայկական ՍՍՀ Կարմիր դրոշի շքանշանի:

«... Հաղթանակին հավատում եմ: Երբևէ նոր հասարակության մարդիկ, լավ, արժանի մարդիկ, կզարմանան մեր հավատին, արիությանը...»: Այս խոսքերը Մարիետա Շահինյանը գրել է 1941 թվականի հունիսի 22-ին՝ Հայրենական մեծ պատերազմի առաջին օրը: Երկու օր հետո նա դիմում տվեց կոմունիստական կուսակցության շարքերը մտնելու մասին: Եվ արդեն հուլիսի երկուսին գրեց օրագրում. «Այսօր ինձ ընդունեցին կուսակցության մեջ: Միաձայն: Լավ է: Պետք է աշխատել... Ինչքան քիչ ենք գնահատել մենք նախորդ կյանքը»:

Մ. Շահինյանը ծավալում է չտեսնված ակտիվ հրապարակախոսական գործունեություն: Նրա հոդվածները նշավակում են ֆաշիզմի գազանային էությունը, սովետական մարդկանց կոչ անում՝ լինել տոկուն, պաշտպանել սոցիալիզմի մեծ նվաճումները, հավատալ վերջնական հաղթանակին: Հոդվածները հրապարակվում են կենտրոնական թերթերի էջերում, հաղորդվում ռադիոյով: Նա աշխատակցում է Սովինֆորմբյուրոյին, գրում Կոմինտերնի համար... Ունենալով յուրահատուկ հռետորական վառ ձիրք, նա ելույթներ է ունենում միտինգներում՝ գործարանային արտադրամասերում և ակումբներում, մետրոյի կայարաններում, պոլիտեխնիկական թանգարանում, ինստիտուտներում: «Քնում եմ օրական 1,5 ժամից ոչ ավելի: Տենդագին աշխատանք է»,— կարդում ենք նրա այն ժամանակվա օրագրում:

1941 թվականի հոկտեմբերի վերջին, մեր հայրենիքի մայրաքաղաքի համար ծանր օրերին, Մարիետա Շահինյանին, ինչպես և մի ամբողջ խումբ գրողների, առաջարկվել էր էվակուացնել Ուրալ:

Սվերդլովսկում նա ավարտում է «Մոսկվայի պաշտպանությունը» մեծ ակնարկը՝ հրապարակախոսական մի վառ պատում իրենց հարազատ մայրաքաղաքը պաշտպանած սովետական մարդկանց սխրագործության մասին: Բայց դա ոչ միայն փաստագրական ստեղծագործություն է, այլև Հոկտեմբերի վեհ օրինակներով դաստիարակված մեր մարդու սոցիալական էության, մեր հասարակական կարգի այն առանձնահատկության խոր վերլուծությունը, որը կարողանում է «մեկ միասնական և միաձույլ շարժման մեջ դնել մարդկային վիթխարի զանգվածները»:

Անվանավոր հեղափոխական, Վ. Ի. Լենինի աշակերտ ու զինակից, 1917 թվականի հոկտեմբերին ռազմահեղափոխական կոմիտեի նախագահ Նիկոլայ Պոդվոյսկու առաջադրանքով Մ. Շահինյանն աշխատում է «Տանկիստներ» ակնարկի վրա: Ակնարկը գրելուն նախորդել էր տանկերի պատմության, տանկային մարտերի փորձի մանրազնին ուսումնասիրությունը. նա լինում էր հոսպիտալներում, հանդիպումներ ունենում մարտական դպրոց անցած տանկիստների հետ: Գնում է նա այն արտադրամասերը, որտեղ ստեղծվում են այդ հզոր մեքենաները, լինում է տանկակայաններում: Կոմբինեզոն հագած մտնում է տանկի մեջ, դիտում անձնակազմի աշխատանքը նոր մեքենաների փորձարկումների ժամանակ: Եվ դրանից հետո միայն գրում է «Տանկիստներ» ակնարկը, որը մեծ հետաքրքրությամբ են կարդացել հարյուր հազարավոր ճակատայիններ:

Որպես «Պրավդայի» հատուկ թղթակից՝ Մարիետա Շահինյանը բազմաթիվ ուղևորություններ է կատարում Սվերդլովսկի, Չելյաբինսկի մարզերում, Ալթայում, լինում է կոլտնտեսություններում, երկարատև զրույցներ ունենում այն մարդկանց հետ, ովքեր իրենց անձնվեր աշխատանքով կոփում էին մեր հաղթանակը թշնամու նկատմամբ: Այդ շրջանում նա ստեղծում է «Ուրալը պաշտպանության մեջ» գիրքը, ականատեսի մի հուզիչ պատմություն պատերազմի դաժան օրերի մասին, սովետական թիկունքի հերոսությունը պատկերող մի գրական հուշարձան:

1943 թվականի վերջին Մարիետա Շահինյանը վերադարձավ Մոսկվա: Պատերազմի տարիներին ցուցաբերած հայրենասիրական անխոնջ աշխատանքի համար նա արժանանում է Կարմիր աստղի շքանշանի, որով նա առանձնապես շատ էր հպարտանում:

Հաղթանակով վերջացավ պատերազմը: Եվ ահա նրա առաջին ուղևորությունը Հայաստան: Այստեղ նա վերսկսեց աշխատանքը դեռ քսանական թվականներին սկսած գրքի վրա: Քանի՜-քանի՜ անգամ է նա այցելել Հայաստան, որպեսզի շրջի ամբողջ երկիրը, տեսնի

գործարաններն ու փաբրիկաները, Զանգեզուրի և Ալավերդու հանքերը, լինի գիտահետազոտական և նախագծային ինստիտուտներում, բազալտե սալիկներով նորից բարձրանա Մատենադարան, սեփական աչքերով տեսնի ոչ միայն այն, ինչ ցուցադրվում է ցուցափեղկերի ապակիների հետևում, այլև այն, ինչ պահվում է գետնի տակ: Նա անթիվ-անհամար գրքեր է կարդացել Հայաստանի մասին, նրա պատմության, նրա երկուհազարամյա թատրոնի, նրա հին գրերի ու հին արհեստների մասին: Եվ գրեց ակնարկների մի մեծ հիանալի գիրք՝ «Ճանապարհորդություն Սովետական Հայաստանում»: Այդ գրքի համար Մարիետա Շահինյանը 1951 թվականին արժանացել է ՍՍՀՄ պետական մրցանակի:

Բայց դեռ դրանից առաջ, 1947 թվականին լույս էր տեսել նրա «Հնգամյակի ուղիներով» ակնարկների գիրքը: Դա «Գուդոկ» թերթի վագոնով Հարավսիբիրյան մայրուղու կառուցվող տեղամասերով նրա կատարած ուղևորության արգասիքն էր:

Նրա ակնարկներում հրապարակախոսական սուր վերլուծության կարողությունը զարմանալիորեն զուգակցվում է գեղարվեստական պատկերավորման ու փիլիսոփայական ընդհանրացման ձիրքի հետ:

«Ակնարկագիրը ամբողջ կյանքում սովորում է, բայց նրան սովորեցնում են ոչ թե դասարանում, ոչ թե դասերով. նրա ուսմունքը **գիտելիքներ քաղելու գիտությունն է**»: Եվ այնուհետև Շահինյանը գրում է. «Փաստերը և՛ գեղարվեստական կերպարով, և՛ փիլիսոփայական ընդհանրացմամբ, և՛ նույնիսկ հաջորդաբար հասարակ վերապատմելով ընթերցողին լավ ձևով կարելի է հաղորդել միայն այն դեպքում, եթե նախապես **ինքդ ես ճանաչել այդ փաստերը**»:

Մարիետա Շահինյանի հրապարակախոսության համար բնորոշ է, ես կասեի՝ նախանշանակ է ոչ միայն սոցիոլոգիական խոր ուսումնասիրությունը, այլև գործնական միջամտությունը մեր կյանքի իրադարձություններին: Անկախ այն բանից, թե դա վերաբերում է տնտեսական կամ գաղափարախոսական պրոբլեմներին:

Դեպի Հարավսիբիրյան մայրուղու շինարարություն կատարած ուղևորության հետ է կապված նրա նշանավոր «Տարբերակի ընտրությունը» հոդվածը, որի մեջ Շահինյանը հանդես եկավ մայրուղու հատվածներից մեկի, այսինքն՝ «հարավային տարբերակի» արդեն հաստատված գծի դեմ: Նա ապացուցեց նախագծի անշահութաբերությունը, քանի որ այն մի կողմ էր թողնում Բելորեցկի հանքավայրերն ու անտառային հսկայական հարստությունները: Նախագիծը վերանայվեց, և Շահինյանի նկատառումները լիովին հավանություն գտան:

Ամեն քիչ թե շատ նշանակալի կենսական երևույթ Մարիետա Շահինյանը կարողանում էր դուրս բերել սովորականի կամ նույնիսկ պատահականի շրջանակներից: Նման երևույթները նրա իմաստուն գրչի տակ դառնում էին լուրջ և խոր ընդհանրացում, ուսանելի դաս:

Մարիետա Շահինյանը եղել է անխոնջ ճանապարհորդ: Նա շրջագայել է մեր երկրում ծայրից ծայր՝ հյուսիսից հարավ և արևմուտքից արևելք: Եվ այդ ուղևորությունների շնորհիվ ստեղծել է դարաշրջանի գեղարվեստական-ակնարկային տարեգրությունը: Շահինյան հրապարակախոսի ձայնը հնչել է մեր ժողովրդի կյանքի բոլոր փուլերում՝ և՛ առաջին հետհեղափոխական տարիներին, և՛ առաջին հնգամյակի տարիներին, և՛ Հայրենական պատերազմի տարիներին և հետպատերազմյան շրջանում: Զարմանալի է նրա հրապարակախոսության թեմատիկ բազմազանությունը. աշխատանքի, կենցաղի, շինարարության, մանկավարժության, առևտրի, գիտության, ճարտարապետության պրոբլեմներ, բանվորների, կոլտնտեսականների, գիտնականների գրական դիմանկարներ:

Ինչի մասին էլ որ գրում էր Շահինյանը, գրում էր խոր գործիմացությամբ: Նրա խորագիտակությունն անսահման էր: Նրա հրապարակախոսության մեջ գրավում է ամեն ինչ. և ամենից առաջ միտքը, որը բաբախում է յուրաքանչյուր էջում, ոչ միայն գիտնականի, այլև խոսքի վարպետի միտքը. կլանում են և՛ թեման, և՛ փաստերը, որոնցով նա հիմնավորում է, և՛ ինքը՝ պրոբլեմը, որ հրապուրում է ընթերցողին, որը կարծես դառնում է հեղինակի խորհրդածությունների մասնակիցը: Մինչև կյանքի վերջը նա հետևել է իր համոզմունքին, որ «մարդը չունի ավելի մեծ հաճույք, քան ճանաչել դեռ չճանաչվածը, տեսնել դեռ չտեսածը, ստեղծել դեռ չստեղծվածը»:

Նա եղել է Եվրոպայի գրեթե բոլոր երկրներում և գրել փայլուն «Արտասահմանյան նամականի» ակնարկային գիրքը, որը քանիցս հրատարակվել ու թարգմանվել է ուրիշ լեզուներով:

Մարիետա Շահինյանի բուռն հակումների մեջ առանձնահատուկ տեղ էր գրավում երաժշտությունը: Նա **գիտեր** երաժշտությունը, **հասկանում** էր այն և նրա մասին գրում էր անհատնում սիրով: Ես արդեն առիթ եմ ունեցել խոսելու այն մասին, որ Շահինյանի հրապարակախոսության մեջ ևս ապրում է երաժշտությունը: Գրողի հրապարակախոսական աշխատանքը երաժշտական է, քանի որ նրա յուրաքանչյուր հոդված կամ ակնարկ հիմնված է կուռ կոմպոզիցիայի վրա, աչքի է ընկնում բոլոր մասերի ներդաշնակությամբ, ունի հրապուրիչ նախերգանք, անհրաժեշտ գագաթնակետ, տրամաբանական վախճան, իսկ երբեմն նաև յուրատեսակ վերջաբան՝ ամփոփում:

Ինչպես և երաժշտությունը, Մարիետա Շահինյանը կարողանում էր ունկնդրել կյանքին և զգալ պրոբլեմը, որը դեռ մակերես դուրս չի եկել և գտնվում է առօրյա կյանքի խորքում: Բայց գրողի նուրբ հոտառությունը օգնում էր նրան պրոբլեմը «դուրս քաշելու» ընդերքից, այսպես կոչված, սաղմնային վիճակից և, այդպիսով, կանխարկել ժամանակը կամ արագացնել պրոբլեմի լուծումը, եթե այն օգտակար է հասարակությանը կամ ժամանակին կանխել, վնասազերծել, եթե այն անընդունելի է:

Մարիետա Շահինյանը միշտ եղել է մեր հասարակության մեջ կատարվող բոլոր գործերի ակտիվ, գործունյա մասնակիցը, արատների ու թերությունների դեմ, լավագույնի ու առաջադիմականի համար մղվող պայքարի անհաշտ մարտիկ:

Վերադառնանք, սակայն, «Հարյուրամյակը ափի մեջ» գրքին, որ նա ավարտեց մահից քիչ առաջ: Այդ գիրքը բազմաբնույթ է և՛ թեմատիկ առումով, և՛ ստեղծագործական հետաքրքրությունների տեսակետից: Դրա առաջին գլուխը նվիրված է Ուլյանովների ընտանիքին, Լենինին: Սա այն թեման է, որը մի անգամ շոշափելով, արդեն երբեք դուրս չի եկել Մարիետա Շահինյանի ստեղծագործական հետաքրքրությունների շրջանակներից և դարձել է նրա ողջ կյանքի թեման: Այդ գլուխն ունի տասներկու հոդված: Դրանցից մեկը՝ «Լենինի հայրը» հոդվածը, Իլյա Նիկոլաևիչի կենսագրության անհայտ էջերի մասին է, նրա ուսանողական տարիների, որպես մանկավարժ նրա ձևավորման, նրա մանկավարժական առաջադիմական հայացքների մասին, ժողովրդական ուսումնարանների տեսուչի պաշտոնում նրա պրակտիկ գործունեության, ուլյանովական ուսուցիչների մասին: Եվ, վերջապես, Իլյա Նիկոլաևիչի մասին, որպես իր զավակների դաստիարակի, որը ընտանիքում ստեղծել էր բարեկամության, համաձայնության, մարդու նկատմամբ բարձր հարգանքի, ժողովրդական կուլտուրան բարձրացնելու, ճորտությունից ազատագրված գյուղացիական երիտասարդության շրջանը գիտելիքներ տանելու պահանջմունքի մթնոլորտ:

Այս գլխում կա մի հոդված այն մասին, թե Մարիետա Շահինյանն ինչպես է աշխատել «Ուլյանովների ընտանիքը» գրքի վրա, մեր դպրոցների լենինյան անկյունների, Վոլգայի հին Սիմբիրսկ քաղաքի մասին: Վերջինիս է նվիրված «Այն հողը, որով սկսել է քայլել Վոլոդյա Ուլյանովը» ակնարկը: Բայց Մարիետա Շահինյանի այդ հոդվածաշարում, ինձ թվում է, ամենից հետաքրքրականը «Ոչ թե ուտոպիա, այլ ռեալ փորձ» հոդվածն է: Դա պարունակում է հեղինակի չափազանց լուրջ խորհրդածությունները «Պետություն և հեղափոխություն» գրքի մասին, որի «քաղաքական բանաձևերում» հնչում է Լենինի մեծ հումանիզմը, խորհրդածություններ այն մասին, թե ինչպիսի «վիթխարի բարոյական ուժ» է ներդրել Լենինը Հոկտեմբերյան հեղափոխության մեջ: Ընթերցողին է հաղորդվում այն տարիների օդը՝ Հոկտեմբերի թարմ կենարար օդը: «Ափսոս,— գրում է Շահինյանը,— որ արվեստում և գրականության մեջ դեռևս չկան հզոր միջոցներ, որպեսզի մեր սերունդներին հաղորդենք Հոկտեմբերյան հեղափոխության օդը, այդ Երջանկության լիակատարության, մաքրության, անշահախնդրության օդը, մեծ Հոկտեմբերի մթնոլորտի թարմության ու վերելքի օդը»:

Այդ գրքում կան նաև անողոք դատապարտման խոսքեր 1978 թվականի նոյեմբերին Բեյրութում հայերի նկատմամբ կիրառված հաշվեհարդարի կապակցությամբ. այդ խոսքերը Մարիետա Շահինյանն ասել է «Չեմ կարող լռել» մի փոքրիկ թղթակցության մեջ: «Պրավդայում» տպագրված այդ ցնցող էսսեն նա գրել է հիվանդանոցում պառկած ժամանակ, երբ կորցրել էր տեսողությունը: Բայց իր ներքին տեսողությամբ նա տեսնում էր իր «արյունակից ծերունիներին, երեխաներին, ինձ նման պառավ հայազգի կանանց, որոնց սպանում են իրենց ավերված տների շեմին... Սիրտս սարսռում է ցավից քեզ համար, հայ աշխատավոր, օտարության մեջ ընկած իմ եղբայր: Քեզ սպանողներին չգիտես ինչու մենք անվանում ենք «պահպանողականներ», թեև հին չարաբաստիկ ժամանակներում նրանց անվանում էինք «ջարդարարներ» և «սև հարյուրակայիններ», իսկ այժմ նրանք ծառայել են և ծառայում են աշխարհում ամենասև ու ստոր քաղաքականությանը»:

Ընթերցողին չի կարող չհրապուրել նաև այդ գրքի «Պատմության կարևոր տարեթիվ» հոդվածը, որն աչքի է ընկնում մի մեծ իրադարձության՝ Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելու 150-ամյակի պատմական նշանակության հեղինակային լուրջ վերլուծությամբ ու խոր ըմբռնմամբ: «Առանց միացման այդ հարյուր հիսուն տարիների,— գրում է Շահինյանը,— հայերը չէին ունենա Նալբանդյան՝ Չերնիշևսկու զինակցին, չէին ունենա Սպանդարյան՝ Լենինի զինակցին և, որ ամենագլխավորն է, չէին ունենա համատեղ ճանապարհ դեպի Հոկտեմբեր»: Կանգնելով Հոկտեմբերյան հեղափոխական դրոշի ներ-

քո՝ հայ ժողովուրդը «ելք ստացավ դեպի մարդկության պատմության լայն ասպարեզը՝ դեպի սոցիալիզմ»:

«Բայց հայերը և՝ քրիստոնեական հնագույն քաղաքակրթության հետնորդները, Ռուսաստանի հետ միանալու պահին նույնպես դատարկ ձեռքերով չեկան»,— գրում է Մարիետա Շահինյանը և հենց այդտեղ էլ մեջբերում անում Վլադիմիր Ստասովից՝ «ռուսական ազգային ոգու խոշորագույն արտահայտչից, ռուսական արվեստի ու դրա մեջ եղած ամեն առաջավորի ջատագովից, ռուսական քննադատության դասականից»: Ահա թե ինչ է գրել Վ. Ստասովը 1886 թվականին. «... հայկական և վրացական արվեստը որոշ դարաշրջանում ուժեղ ազդեցություն է ունեցել ռուսական արվեստի վրա նրա ձևավորման շրջանում և ներկայումս էլ անհնար է, ուսումնասիրելով ռուսական արվեստի առաջին դարաշրջանները, լինի դա ճարտարապետության թե գեղարվեստական դրվագավորման բնագավառում, իսկ մասամբ նաև գեղանկարչության մեջ, մի կողմ թողնել հայկական և վրացական արվեստը: Ընդ որում հիշել միայն բյուզանդական արվեստը, նրա մեջ միայն տեսնել մեր ազգային արվեստի սկզբնական աղբյուրները, միայն նրա մեջ տեսնել մեր գեղարվեստական ձևերի բոլոր նախատիպերը, մեծ մոլորություն է: Շատ դեպքերում, գուցե՝ ամենից ավելի ռուսական ճարտարապետության մեջ, նախասկզբնական ազդեցությունները եղել են ոչ միայն հատուկ բյուզանդականները, այլ նաև հայ-բյուզանդականներն ու վրաց-բյուզանդականները»:

«Հարյուրամյակը ափի մեջ» երկը Մարիետա Շահինյանի վերջին գիրքն է, որ նա ավարտել է արդեն այն ժամանակ, երբ չէր կարող կարդալ իր գրածը: Նրա համար կարդում էին բարձրաձայն, և նա բանավոր ուղղում էր այն, ինչ անհրաժեշտ էր գտնում:

Ստացվել է այնպես, որ գրական բոլոր ժանրերի ականավոր վարպետ Մարիետա Շահինյանը իր ստեղծագործական կյանքն սկսել է «Գելենջիկյան մոտիվներ» հրապարակախոսական բանաստեղծությունից և ավարտել «Հարյուրամյակը ափի մեջ» փայլուն հրապարակախոսական գրքով:

Հայրենական գրականության մեծ մշակ Մարիետա Շահինյանը մինչև իր երկարատև ու սքանչելի կյանքի վերջին օրը հավատարիմ մնաց իր ինքնամոռաց սկզբունքին, որ նա գրի էր առել միջին տարիքում՝ իր օրագրում. «Ես պետք է աշխատեմ, քանի դեռ կարող եմ աշխատել: Ըստ երևույթին, կյանքում ինձ ուրիշ ոչինչ չի տրված»:

**ԿՈՆՍՏԱՆՏԻՆ ՍԵՐԵԲՐՅԱԿՈՎ**

Հանձնված է շարվածքի՝ 22.03.88 թ.: Ստորագրված է տպագրության՝ 22.04.88 թ.: ՎՖ 03906 Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 16.352: Պատվեր՝ 553:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան-23, Օրջոնիկիձեի պողոտա № 2: